

## ԲԱՐԻ ԼՈՒՅՍ, ԱՆՏԱՌ

*ՍՈՒՐԵՆ ՄՈՒՐԱԴՅԱՆ*

Արևն անուշ վերից ժպտաց,
Ու արթնացան խոտերը թաց,
Ծաղիկները շողացին վառ.
— Բարի լո՜ւյս քեզ, կանա՜չ անտառ:—
Ճլդիկները սիրուն-սիրուն
Աչիկներն են լուռ տրորում,
Նայում դես-դեն վգուշաբար.
— Բարի լո՜ւյս քեզ, կանա՜չ անտառ:—
Փայտփորիկն է թմբուկ զարկում,
Թռչուններն են ժիր համերգում,
Խոխոջում է աղբյուրը սառ.
— Բարի լո՜ւյս քեզ, կանա՜չ անտառ:—
Ոչխարի հոտն առավոտ վաղ
Փռվեց սարում ցողաշաղախ,
Փչեց շվին հովիվն ուրախ.
— Բարի լո՜ւյս քեզ, կանա՜չ անտառ:—
Արեգակը լուսաժպիտ,
Աղվես, եղնիկ, ծաղիկ ու ծիտ
Ձայնակցեցին կարծես իրար.
— Բարի լո՜ւյս քեզ, կանա՜չ անտառ:

*Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*



## ՈՒԿՐԱԻՆԱԿԱՆ

Դժվար է ասել, թե որն է Ուկրաինայում ամենահիշարժանը: Գուցե Կարպատյան լեռնե՞րը՝ ալպիական մարգագետիններով ու արագահոս գետերով: Իսկ գուցե Դոնբա՞սը՝ մեր երկրի քարածխի շտեմարանը, որը նաև արդյունաբերական կարևոր կենտրոն է: Բայց ինչպե՞ս մոռանաս մայր գետը՝ կապույտ Դնեպրը, որը հմայիչ է ոչ միայն բնական գեղեցկությամբ, այլև հզոր հիդրոկայաններով: Իսկ բանաստեղծներին և նկարիչներին այնքան հուզող ուկրաինական տա-



## ԲԱՐԴԻՆԵՐԸ

Սլանում են բարդիները դեպի վեր՝
Որպես կանաչ հրթիռներ:
Մարդկանց նման բարդիներն էլ աշխարհում
Լույս են ուզում ու գարուն:
Մեզ նման են բարդիները սլացիկ,
Ունեն վաղվա երազանքներ գեղեցիկ
Եվ դալար են սիրում նրանք սոխակի,
Եվ բուրմունք են սիրում վարդի ու ծաղկի:
Բարդիները կռվի որոտն են ատում,
Բարեկամ են նրանք գարնան մեղեդուն:
Նրանց կանաչ հրթիռներն են ձգվում վեր,
Որ աշխարհում խաղաղ քնեք, մանուկնե՜ր:

*ՄԻԽԱՅԼՈ ԼՈՒՏՍԻՆ*
*(աշակերտ)*
*Թարգմ. ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ*



# Ս Ս Հ

*փաստաննե՞րը, որտեղ այժմ ծփում են արտերը: Կա՞մ Պոլեսյա՞ն, որի թավ անտառներում և պարզ լճերում ապրում են բազմատեսակ կենդանիներ ու ձկներ: Անհնար է չհիշել արևոտ Ղրիմը՝ համամիութենական առողջավայրը: Չէ՞ որ այստեղ է գտնվում նաև Արտեկը:*

*Գեղեցիկ ու հարուստ Ուկրաինան, ՌՍՖՍՀ-ից հետո, բնակչության թվով երկրորդ տեղն է գրավում ՍՍՀՄ-ում, իսկ տարածությամբ երրորդն է:*



# Մ Ե Դ Ա Լ Ը

*ԻՎԱՆ ԱՐԻՆԻՆ*

Բլրի վրա, կարծես գետնի տակից, հայտնվեց զինվորական համազգեստով և ուսապարկով, բարձրահասակ, թիկնեղ մի մարդ: Խնձորի ծառի վրայից Նիկոլկան պարզ տեսավ, թե ինչպես նա գլխարկը հանեց, սրբեց ճակատը և գյուղին նայելով՝ կանգ առավ: Նիկոլկան նկատեց, որ նա հենց իրենց տանն է նայում: Նիկոլկայի կրծքում ինչ-որ բան խլրտաց. նա արմունկով հրեց Ֆեդկային, որը նստել էր իր կողքին, ճյուղի վրա, և հենց այդ պահին էլ կարողացել էր պոկել կարմրաթուշ մեծ խնձորը: Անակնկալ հարվածից Ֆեդկան թողեց խնձորը, որը թմփոցով ընկավ ցած:

— Օ՜յ, հարազա՜տս,— ձեռքերն իրար խփեց մայրը:

Նիկոլկան տեսավ, թե նա ինչպես տան սպիտակեցնելը թողնելով, արագ վազեց բանջարանոցների միջով՝ ճանապարհին դիպչելով դդումի թաղերին: Նիկոլկան դեռ ուշքի չեկած՝ հայտնվեց ծառի տակ: «Հայրիկն է, հայրիկը»,— բաբախում էր սիրտը: Նա նույնպես ուզում էր այնտեղ վազել, բայց այդ պահին մայրիկը տեղ հասավ և գրկեց հայրիկին: Նիկոլկան շփոթվեց, քիթը վեր քաշեց և թաքնվեց ճամփեզրյա բարձր խոտերի մեջ: Անաղմուկ մոտեցավ Ֆեդկան և նստեց նրա մոտ: Չնայած նա հեռուներն էր նայում, բայց աչքերը լայն բացված էին:

— Քեզ ի՞նչ պատահեց,— նրա ձեռքից քաշելով՝ հարցրեց Նիկոլկան:

Ֆեդկան չպատասխանեց:

— Խլացե՞լ ես, ի՞նչ է:

Նիկոլկան ուզում էր տուն գնալ, որովհետև հայրիկը բակում ուրախ չփչփացնելով լվացվում էր, մայրիկը սափորով ջուր էր լցնում նրա թիկունքին, արևից այրված վզին և խոսում ու խոսում էր, իսկ տատիկը անընդհատ իրեն էր կանչում:

— Խնձորի ծառից ընկե՞լ ես,— վախեցած հարցրեց Նիկոլկան:

Ֆեդկան բացասաբար շարժեց գլուխը:

— Ա՜յ քեզ տղա: Հենց նոր այգում էր, այս ո՞ւր չքվեց,— վշտացած խոսում էր տատիկը:

— Որդի՜ս: Որտե՞ղ ես, որդի՛ս,— հնչեց մի ար-[illegible] ու վոր թավ ձայն:

[illegible]ղաները անսպասելիությունից ցնցվեցին և ո[illegible]ելան:

— Արի այստե՛ղ, տեսնեմ ինչպիսի՞ն ես:

Այդ ձայնը Ֆեդկային քամու նման դաշտ քշեց: Նիկոլկան շփոթված թարթեց աչքերը և վհատված տուն գնաց: Հայրը նրան վեր թռցրեց ու դեմքը հպեց իր մազմզոտ այտին:

— Ահա թե ի՜նչ կտրիճ ես դարձել,— հիացմունքով ասաց հայրը:— Ինձ չճանաչեցի՞ր: Ասենք, զարմանալի չէ. երեք տարեկան էլ չկայիր, երբ բաժանվեցինք:

Նա Նիկոլկային կանգնեցրեց հողաթմբին և կոշտ ափով հարդարեց նրա մազափունջը: Այժմ Նիկոլկան հավասարվել էր հոր ուսին և կլանքում առաջին անգամ այդքան մոտից կարող էր մեդալներ ու շքանշաններ տեսնել և նույնիսկ ձեռք տալ: Ինչքա՜ն են ինքն ու Ֆեդկան երազել այդպիսի րոպեի մասին, նույնիսկ ավելին՝ հույս են ունեցել, որ հայրիկները մեդալներ կնվիրեն իրենց և հաճախ վիճել են, թե արդյո՞ք իրավունք կունենան այդ մեդալը կրելու: Բայց հիմա Նիկոլկայի մեդալ ունենալու ցանկությունը կորավ:

— Ինչո՞ւ ես այդպես լուռ ու մունջ,— հարցրեց հայրը, որ ուզում էր որդու ձայնը լսել:

— Բարևի՛ր հայրիկին, գի՜ժ,— խնդրեց մայրը և իսկույն տուն վազեց՝ ճաշին նայելու:

— Երեխան ուրախությունից համրացել է,— ասաց

տատիկը։— Ստեփա՛ն, նա այնքան չարաճճի ու շատախոս է, որ խոսքով բոլորին կհաղթի։ Հիմա կարծես լեզուն կուլ է տվել։

Երեկոյան հյուրեր հավաքվեցին, հիմնականում՝ կանայք, որովհետև տղամարդիկ նոր-նոր սկսում էին ռազմաճակատից վերադառնալ։ Հանդիսավոր օրվա առթիվ, սեղանի վրա կարմրին էր տալիս տապակած հավը։

— Արդյո՞ք նա համր չէ,— ռազմաճակատային կյանքից պատմելը մի պահ ընդհատելով, հայրը նայեց Նիկոլկային ու պատասխանի չսպասելով՝ հարցրեց, թե համագյուղացիներից ով չի տուն վերադարձել, ով է նամակ գրում, ով է...

— Պատերազմ է,— տխուր ասում էին կանայք։

— Օդարկին Պյոտրն էլ հաղթանակից մի քիչ առաջ...

Մառանում հեծկլտոց լսվեց։

— Նիկոլկա՛,— զարմացավ մայրիկը։— Ա՜յ քեզ հիմարիկ։ Հայրիկը տուն է եկել, իսկ նա լաց է լինում։

Հայրը արագ բարձրացավ, սովորական շարժումով ուղղեց վերնաշապիկը, լայն քայլերով մոտեցավ տղային և նստեցրեց ծնկներին։

— Տղա՛ս, ի՞նչ է պատահել,— մեղմ հարցրեց նա։

— Ֆեդկայի՞ն տուր այս մեդալը,— գլուխը չբարձրացնելով՝ ասաց Նիկոլկան։

Հայրը մի քիչ մտածեց, ապա վճռական շարժումով վերնաշապիկից հանեց «Մարտական ծառայությունների համար» մեդալը և դրեց տղայի ափի մեջ։

Նիկոլկան ամուր սեղմեց այն, նայեց հոր աչքերին, որոնք իրեն շատ-շատ հարազատ երևացին, գրկեց հորը և նորից լաց եղավ։ Լաց եղավ բարձրաձայն, չամաչելով արցունքներից։

— Ֆեդկայի հայրը... երբեք չի վերադառնա...

*Թարգմ. ԳՐԻԳՈՐ ՄԱԿՈՒՆՑԻ*

**ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ**

Վազվզում են նժույգները գույնզգույն,
Սանձեր չունեն նրանք իրենց բերանին,
Ջուր չեն խմում նրանք ու խոտ չեն ուտում,
Ամեն մեկը տասնյակ հեծվոր կտանի։

*([illegible])*

Ջոգված կանաչ տերևների պսակով
Ու զարդարված կարմիր-կարմիր մանյակով,
Այն ո՞վ է իր գեղեցկությամբ հիացած,
Նայում անվերջ՝ ջրի վրա կռացած։

*(սունկ)*

Երկար-երկար հասակով մեկ
Պառկած եմ ես գիշեր-ցերեկ,
Թվում է, թե գործ չեմ անում,
Բայց մարդկանց եմ բերում-տանում։

*(ճանապարհ)*

*Փոխադրությունը՝ ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆԻ*



# ՔՈՒՉԱԿ ՆԱՀԱՊԵՏԻ ԱՎԱՆԴՈՒԹՅՈՒՆԸ

**«ԵՐԿՐՈՐԴ ԿՅԱՆՔ» ԳՐՔԻՑ**

*ՆԱԻՐԻ ԶԱՐՅԱՆ*

*Մայրս ինձ պատմեց Քուչակ Նահապետի մասին հետևյալ ավանդությունը.*

*— Քուչակ Նահապետը քո հասակի տղա էր, երբ հոր հետ մեկտեղ գնաց Արչակ՝ իրենց կտավհատն այնտեղ ձիթհանելու։ Խառակոնիսա ձիթհանքն այն տարի չէր աշխատում։*

*Որիկուն ճրագվառոցին ձիթհանքի տերը դռները փակում է, ասում.*

*— Գառալավեժ է։*

*Գառալավեժ քրդերեն խոսք է։ Երբ դռները փակում են հոդայում, ձիթհանքում, ջրաղացում, հարսանքատանը, ստիպում են, որ ամեն մարդ հերթով խաղ ասի, ասում են՝ գառալավեժ է։ Այսինքն կամ պետք է խաղ ասեն կամ ներկաներին արաղով հյուրասիրեն։*

*Բոլորն էլ հերթով խաղ են ասում, հերթը հասնում է Քուչակին։ Սա թե՝*

*— Ես խաղ ասել չգիտեմ։*

*Վրան ծիծաղում են, ձեռ են առնում.*

*— Վա՜յ, ահագին մեծ տղա է ու խաղ ասել չգիտե...*

*Քուչակը խիստ վիրավորվում է, ձիթհանքի դուռը բաց է անում, գնում է, պառկում Արչակի հին խաչքարերի մեջ ու քունը տանում է էնտեղ։ Երազում ձիթհանքի տիրոջ սիրուն աղջիկը՝ Թանկխաթունը Քուչակին ոսկե թասով անմահական ջուր է տալիս, ասում.*

*— Վեր կաց գնա իմ հոր ձիթհանքը, մինչև լույս խաղ ասա, ու երբ հերս կասի. «Ի՞նչ ես ուզում, Քուչա՛կ տղա», ասա՝ «Թանկխաթունն եմ ուզում»։*

*Քուչակը վեր է կենում գնում, վերադառնում է ձիթհանքը, մինչև լույս խաղ է ասում, էնպիսի անմահական խաղեր, որ մինչև այդ օրը ոչ արչակցիք էին լսել, ոչ խառակոնիսցիք։ Բոլորը Քուչակին գովում են, ասում են՝ ձենդ անսպառ։ Առավոտյան կողմը ձիթհանքի տերը դիմում է Քուչակին, հարցնում.*

*— Քուչա՛կ տղա,. դու քո անմահական խաղերով իմ ձիթհանքի անունը մեծացրիր։ Ի՞նչ ես ուզում, ասա՛։ Աչքիս լույսն էլ ուզենաս՝ կտամ։*

*— Աչքիդ լույսը թող մնա քեզ,— ասում է Քու-*



չակը։— Դու ինձ կնությա՛ն տուր քո Թանկխաթունն աղջկան։

— Դու իմ Թանկխաթունին որտե՞ղ ես տեսել,— զարմանում է ձիթհանքի տերը։

— Ես քո Թանկխաթունի խորոտության ձենն եմ լսել,— ասում է Քուչակը,— իսկ իրեն տեսել եմ երազում։

— Քեզ մատաղ լինի Թանկխաթունս,— ասում է ձիթհանքի տերը և տեղնուտեղը նշանդրեք են կատարում։

Մի ամիս հետո յոթն օր յոթը գիշեր հարսնիս են կատարում և Թանկխաթունին պսակում են Քուչակի հետ։

Քուչակը դառնում է անմահական երգիչ, իր անունն էլ դնում է Նահապետ։

Քուչակն իր խաղերով հիվանդություն էր բուժում, վերք էր լավացնում, թախիծ էր փարատում։

Քուչակ Նահապետի ձենը Խառակոնսից ու Արչակից դուրս է գալիս, հասնում Վան քաղաքը, Վանից էլ դուրս է գալիս հասնում է Ստամբոլ։

Էդ օրերին Ստամբոլում Օսմանյան Սուլթանի թագուհին երեխա է բերում։ Բայց քարանում է նրա



կուրծքը և թագուհին չի կարողանում իր նորածնին կերակրել:

Կանչում են տերության ամենալավ բժիշկներին, չեն օգնում: Թագուհին տանջվում է կրծքի քարությունից:

— Սուլթանն ապրած կենա,— խորհուրդ է տալիս մեծ վեզիրը,— կանչենք աշխարհի ամենալավ երգիչներին, թող երգեն թագուհու համար, գուցե հուզվելուց փափկի նրա կուրծքը, քարացած կաթը դուրս բխի:

Կանչում են աշխարհի ամենաքաղցրաձայն երգիչներին: Բայց նրանց երգն էլ չի օգնում: Թագուհին տանջվում է քարացած կրծքով, երեխան ուրիշի կուրծք չի ուտում, սոված լալիս է:

— Սուլթանն ապրած կենա,— ասում է մեծ վեզիրը:— Քո տերության մեջ կա մի Վան քաղաք, Վանի վիլայեթում կա Խառակոնիս գյուղ, էդ գյուղում ապրում է անմահական երգիչ Քուչակ Նահապետը, որ իր երգով հիվանդ է բուժում, վերք է լավացնում, թախիծ է փարատում: Հրամայիր, որ այդ երգչին կանչեն Ստամբոլ: Թե որ մի դեղ կա թագուհու համար, Քուչակ Նահապետի երգն է:

Թագավորի մարդիկ ձիերը հեծնում, գալիս են Խառակոնիս: Գյուղին դեռ չհասած՝ հանդիպում են մի ջրվորի ու հարցնում.

— Որտե՞ղ է ապրում անմահական երգիչ Քուչակ Նահապետը:

— Բիլ մանըմ,— պատասխանում է ջրվորը:

— Դու ինքդ Քուչակ Նահապետին չե՞ս ճանաչում,— հարցնում են թագավորի մարդիկ:

— Թան մանըմ,— պատասխանում է ջրվորը:

Թագավորի մարդիկ ձիերը քշում են, մտնում գյուղը և հարցուփորձ անում Քուչակ Նահապետի մասին:

Խառակոնիսա երեխաները թագավորի մարդկանց հանում են ժամտան դուռը և այնտեղից մատով ցույց են տալիս.

— Քուչակ Նահապետը ա՛յ էն մարդն է, որ այնտեղ արտ է ջրում:

Թագավորի մարդիկ ձիերը քշում վերադառնում են ջրվորի մոտ ու բարկացած հարցնում.

— Ինչո՞ւ դու մեզ խաբեցիր: Ինչո՞ւ չասացիր, թե ինքդ ես Քուչակ Նահապետը:

Քուչակը քահ-քահ ծիծաղում, ասում է.

— Ես ձեզ չեմ խաբել: Ես իմացա, որ դուք թագավորի մարդիկն եք: Թագավորի մարդկանց ես ո՞նց կխաբեի: Դուք ինձ հարցրիք՝ որտե՞ղ է ապրում Քուչակ Նահապետը, ես ասացի՝ «Բիլ մանըմ», այսինքն՝ իմացիր, ես եմ: Իսկ դուք լսեցիք՝ «Բիլմանըմ», որ թուրքերեն նշանակում է՝ չգիտեմ: Դուք նորից հարցրիք, թե ես ճանաչո՞ւմ եմ, արդյոք, Նահապետին: Ես ասացի. «Թան մանըմ», այսինքն՝ ճանաչիր, ես եմ: Իսկ դուք լսեցիք՝ «Թանմանըմ», որ թուրքերեն ասել է՝ չեմ ճանաչում:

Սուլթանի մարդիկ ուրախ ծիծաղեցին, երբ իմացան, որ գործ ունեն իմաստուն ու սրամիտ մարդու հետ: Նրանք հայտնեցին Ստամբոլից Խառակոնիս գալու իրենց նպատակը, թե՝ էսպես ու էսպես:

— Աչքիս վրա,— ասաց Քուչակ Նահապետը:— Սուլթանի հրամանն աստծո հրաման է: Գնանք իմ տուն, հաց անուշ արեք, հանգստացեք, նոր ճանապարհ կընկնենք:

— Մենք հաց ուտելու ժամանակ չունենք,— ասացին Սուլթանի մարդիկ, որ երեք հոգի էին:— Մենք շատ ենք շտապում: Մեզ հրամայել են, որ քեզ որտեղ տեսնենք, նստեցնենք ձիու թարքը, տանենք Ստամբոլ: Թագուհին, կուրծքը քարացած, քեզ է սպասում:

— Դե որ էդպես է,— ասաց Քուչակը,— դուք ձեր ձիերը քշեք, վերադարձեք Ստամբոլ: Ես ձեր ետևից կհասնեմ:

— Ո՞նց կհասնես, ա՛յ մարդ,— ասացին թագավորի մարդիկ:— Մենք՝ ձիով, դու՝ ոտով...

— Ես ոտով չեմ,— ասաց Քուչակը:— Ես կնստեմ իմ սպիտակ եզը և ձեզանից շուտ կհասնեմ Ստամբոլ:

— Էդ ո՞նց կլինի,— տարակուսեցին Սուլթանի մարդիկ:— Եզը ո՞նց կհասնի ձիերին:

Նահապետ Քուչակը բարկացավ.

— Դուք ինձ բերել եք Սուլթանի հրամա՞նը: Ուրեմն ես պետք է կատարեմ: Չկատարեցի, գլուխս կթռցնեք: Էլ ինչո՞ւ ենք ավելորդ խոսում:

Սուլթանի մարդիկ տեսան, որ էս մարդուն խելքով ու լեզվով չափվել չեն կարող, փափկեցին, ասացին.

— Մեր գործն էր Սուլթանի հրամանը քեզ հասցնել: Մնացածը դու գիտես:

Նրանք ձիերը քշեցին ու հեռացան:

Քուչակը արտը ջրեց պրծավ, եկավ տուն, հաց կերավ, Թանկխաթունի թշերը պագեց, Նունուֆար անունով մի քույր ուներ, նրա ճակատը պագեց, հե-



Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

ծավ իր սպիտակ եզը, ճանապարհ ընկավ, Ստամբո՛լ, որտե՞ղ ես, եկա:

Շատ գնաց, քիչ գնաց, հասավ Բանդի-Մահու գետը: Տեսավ, հոտաղները ջրի մեջ գոմեշներ են լվանում, բարև տվեց, որ անցնի, բայց հոտաղները նրան ճանաչեցին, ասացին.

— Քուչա՛կ Նահապետ, ասում են, դու իմաստուն մարդ ես, մի հանելուկ ասենք, հանիր:

— Դե ասե՛ք, տեսնենք ձեր հանելուկը,— իր եզը կամրջի վրա կանգնեցրեց Քուչակը:

— Էն ի՞նչ է, որ մի քիթ ունի, քառասուն աչք:

— Քանի՞ քիթ, քանի՞ աչք:

— Մի քիթ, քառասուն աչք:

— Մինչև դուք ձեր գոմեշները լողացնեք պրծնեք, ես ձեր հանելուկի պատասխանը կտամ,— ասաց Քուչակը, եզան գլուխը շուռ տվեց դեպի Խառակոնիս, հասավ տուն ու քրոջը հարցրեց.— Նունուֆա՛ր, ասա՛, էն ի՞նչն է, որ ունի մի քիթ, քառասուն աչք: Բանդի-Մահու գետում գոմեշ լողացնող հոտաղները ինձ էս հանելուկն ասին, ես չկարողացա հանել ու խայտառակվեցի:

— Տնաշե՛ն,— պատասխանեց Նունուֆարը,— ոտքե՛րդ աչքերիր: Տրեխն է, որ ունի մի քիթ, քառասուն աչք:

Քուչակն իր եզը քշեց, հասավ Բանդի-Մահու, հոտաղները գոմեշ լողացնելը դեռ չէին վերջացրել, հանելուկի պատասխանը տվեց ու առաջ անցավ:

Նա Ստամբոլ հասավ թագավորական ձիավորներից մի շաբաթ առաջ:

Մեծ վեզիրը շատ ուրախացավ նրա համար, որ վանեցի երգիչը Սուլթանի հրամանն այդքան արագ էր կատարել: Նա Քուչակ Նահապետին առավ տարավ Սուլթանի Քյոշկ-Սարան, մտցրեց թագուհու սենյակը, ասաց.

— Էս վարագույրի ետևում պառկած է թագուհին, կաթը կրծքի մեջ քարացած: Թե որ այնպիսի մի երգ ասես, որ թագուհին հուզմունքից լաց լինի ու կաթը կակղելով դուրս գա, ամենակարող Սուլթանը քեզ կարժանացնի իր հատուկ ուշադրությանը:

Քուչակ Նահապետը չոքեց վարագույրի առաջ, իր սազը սեղմեց կրծքին և ասաց էն խաղերը, որ Թանկխաթունին երազում տեսնելուց հետո, ասել էր Արչակա ձիթհանքում:

Վարագույրի ետևից դուրս եկավ թագուհու պառավ նաժիշտը, ասաց.

— Աչքդ լո՜ւյս, Քուչա՛կ Նահապետ, քո խաղերով դու թագուհու աչքերից արցունք հանեցիր, ստինքներից՝ կաթ: Ասում էին, որ դու հրաշագործ երգիչ ես: Հալա՜լ է քեզ քո անունը:

Քուչակի հաջողության լուրը հասավ Սուլթանին: Սուլթանը երգչին կանչեց իր Քյոշկ-Սարան, թախտից իջավ, ճակատը պագեց, գլխին թագավորական թանկագին շալ փաթաթեց, ասաց.

— Աֆերի՛մ, Վանլի՛ Քուչակ:

Քուչակը Սուլթանի ձեռքը պագեց, ուրախ սրտով դուրս եկավ նրա գահասենյակից: Քյոշկ-սարայի շքեղ սրահներում հավաքված նազիր-վեզիրները, երգիչները, բժիշկները և ուրիշ պալատականներ, որը ուրախությամբ, որը նախանձով, շնորհավորեցին նրան, ասին.

— Էդ ի՞նչ աննման շալ է փաթաթել Սուլթանը քո գլխին: Մութ տեղ լույս է տալիս:

Քուչակին նախանձողների մեջ կար մի երգիչ, անունը՝ Մահմուդ Շահիր, սա Սուլթանի հետ հատուկ մոտիկություն ուներ, Սուլթանի գահասենյակը մտնել դուրս գալ ուներ: Մտավ Սուլթանի մոտ ասաց.

— Սուլթանն ապրած կենա, տեսա՞ր քեզ ոնց անպատվեց էդ Վանլի Քուչակը:

— Ի՞նչ է արել,— հարցրեց Սուլթանը:

— Դու ընձան կապեցիր նրա գլխին, նա գլխից արձակեց, կապեց փորին,— չարախոսեց Մահմուդ-Շահիրը:

Սուլթանը Քուչակ Նահապետին կանչեց, ասաց.

— Վանլի՛ Քուչակ, ես իմ ընձան կապել էի քո գլխին, դու ինչո՞ւ ես արձակել կապել քո փորին:

— Սուլթանն ապրած կենա,— պատասխանեց Քուչակ Նահապետը,— քո փառավոր ընձան, որ դու կապեցիր իմ գլխին, բոլորը տեսնում էին ու քեզ փառք տալիս: Իսկ ինքս չէի տեսնում: Դրա համար գլխիցս արձակեցի, կապեցի մեջքիս, աչքիս առաջ, որ ամեն վայրկյան տեսնեմ քո թագավորական ողորմածությունը և փառք տամ քեզ:

— Աֆերի՛մ, Վանլի՛ Քուչակ,— ուրախացավ Սուլթանը և այս անգամ նրան հագցրեց մի աթլասի խալաթ, աբրշումե շալից երկու անգամ ավելի թանկագին ընծա:

Քուչակն այս անգամ պագեց Սուլթանի կուրծքը, ուրախ սրտով դուրս եկավ նրա գահասենյակից և Քյոշկ-Սարայի սրահներում սպասող պալատականներին պատմեց ամեն բան:

Մահմուդ-Շահիրը դարձյալ մտավ Սուլթանի գահասենյակը, ասաց.

— Սուլթանն ապրած կենա, տեսա՞ր քեզ ոնց անպատվեց էդ Վանլի Քուչակը:

— Ի՞նչ է արել,— հարցրեց Սուլթանը:

— Դու նրան երկու անգամ ավելի թանկ ընծա տվիր, իսկ նա հանդգնեց պագել քո սրբազան կուրծքը... Ասում են, վարագույրի ետևում երգելիս գլավուրը վարագույրի ծոթը գաղտնի բաց է արել, տեսել է թագուհուն: Վանլի Քուչակը դա պատմում է բոլորին ու պարծենում...

Սուլթանը Քուչակ Նահապետին կանչեց, ասաց.

— Վանլի՛ Քուչակ, ես քեզ պատիվ անելու համար ալթլասե խալաթ հագցրի, դու ինչպե՞ս հանդըգնեցիր պագել իմ կուրծքը: Միտքդ ի՞նչ էր...

— Սուլթանն ապրած կենա,— պատասխանեց Քուչակ Նահապետը,— ես չեմ պագել քո կուրծքը, ես ալլահի ձեռքն եմ պագել:

— Ինչպե՞ս թե ալլահի ձեռքը...

— Եթե ալլահի ձեռքը ամեն վայրկյան քո կրծքին չլինի, դու չես կարողանա աշխարհ կառավարել: Ալլահի ձեռքը սրբազան կրծքի վրա է, ես էլ պագեցի:

— Աֆերի՜մ, Վանլի՛ Քուչակ,— ուրախացավ Սուլթանը:— Դու իմաստուն մարդ ես, Մահմուդ-Շահիրը՝ հիմար չարախոս: Ես կհրամայեմ, որ նրան գլխատեն: Իսկ դու ասա, ի՞նչ ես ուզում քո թագավորից: Ինչ որ լեզուդ բռնի, կստանաս:

Քուչակ Նահապետը մտածեց, մտածեց, ասաց.

— Սուլթանն ապրած կենա, քեզանից կուզեմ յոթը մզկիթի ծախս, յոթը եկեղեցու ծախս, յոթը կամըրջի ծախս: Ուզում եմ, Ստամբոլից մինչև Խառակոնիս իմ ճանապարհը ծածկեմ քո ողորմածության հիշատակներով:

Սուլթանը կանչում է իր խազնադարին (գանձապետին), հրամայում է Քուչակ Նահապետին տալ յոթ մզկիթի, յոթ եկեղեցու և յոթ կամուրջի ծախս: Քուչակ Նահապետը էդ մզկիթները, ժամերն ու կամուրջները շինելով գալիս է մինչև Խառակոնիս:

— Բա մզկիթներն ինչո՞ւ է շինում,— հարցրի ես անչափ զարմացած:

— Է՜, բալա՛ ջան,— պատասխանեց մայրս,— Քուչակ Նահապետն իմաստուն մարդ էր: Մզկիթի ծախս որ չուզեր, Սուլթանը նրան եկեղեցու ու կամրջի ծախսերը չէր տա:

— Հետո՞...

— Հետո, Հայաստանիս ասեմ, ամենից վերջը շինում է մեր սուրբ Թևադորոս եկեղեցին, ինքն է պատերը շարում, ինքն է կամարները կապում, ինքն է գմբեթը բարձրացնում: Երբ հասնում է գմբեթի ծայրին, խաչը տնկում է, ասում. «Ես գմբեթի ծերից վար կթռչեմ: Որտեղ որ կընկնեմ կմեռնեմ, էնտեղ էլ ինձ կթաղեք»: Ու թռչում է: Բայց արդար մարդ էր, աստվածը դեռ չէր ուզում նրա հոգին առնել, հրեշտակներ է ուղարկում, որ Քուչակի թևերը մտած նրան կամաց իջեցնեն կակուղ գետնի վրա:

Քուչակ Նահապետը հրեշտակներին հարցնում է.

— Ասացե՛ք, հապա ես ե՞րբ կմեռնեմ:

Հրեշտակները պատասխանում են.

— Դու կերթաս արտը ջուր անելու, կինդ քեզ հաց ու մածուն կբերի, մոռացած կլինի հետը պնակ վերցնել, դու մածունը կլցնես քո բահի մեջ, բահից կուտես, քո գլխի վերևում կերևա մի բարակ ամպ, կմաղի մի բարակ անձրև, դու տուն կգնաս, կինդ քո տակը սև այծի մորթի կփռի, առաջդ մածուն կդնի, որ ուտես, դու էդ մածունը կուտես ու կմեռնես:

Դրանից հետո Քուչակ Նահապետն ապրեց մինչև հարյուր տարեկան ու գրեց իր վերջին խաղը.

«Ես եմ Քուչակ ի Վանա,
Ի գեղեն Խառակոնիսա,
Լրացեր է հարյուր տարիս,
Այլ չի գար մտքիկս ի վերա»:

Էս խաղն ասաց ու գնաց արտը ջուր անելու:

---

# ԼՈՒՍԱՆԿԱՐՉԱԿԱՆ ԱՊԱՐԱՏ

Հ. ԲՅՈՒՂԼԵՐ



Ես ճորս շատ էի սիրում: Նոր տարվա առթիվ ուզում էի նրան նվիրել մի բան, որը նա կուզենար ունենալ և որը նրան իսկապես կուրախացներ: Հունվարի կեսերին ես արդեն գիտեի, թե ինչ: Մի անգամ, երբ մենք նստած էինք սեղանի շուրջ, ճայրս ասաց.

— Ափսոս, որ ես լուսանկարչական ապարատ չունեմ: Ձեզ բոլորիդ կնկարեի և ի՜նչ լավ պատկերներ կհանեի:

Այդ րոպեից ես գիտեի, որ ճետևյալ Նոր տարում ճորս լուսանկարչական ապարատ պիտի նվիրեմ: Հենց ճետևյալ օրը դպրոց գնալիս ես կանգ առա մի ցուցափեղկի առջև, որտեղ լուսանկարչական ապարատներ էին ցուցադրված, և տուն վերադառնալիս մտա այդ խանութը: Ես ճուզված էի...

— Ի՞նչ է պատաճել, փոքրի՛կ օրիորդ,— ճարցրեց վաճառասեղանի ետևը կանգնած մարդը:

— Ես շատ կուզեի մի լուսանկարչական ապարատ գնել:

# ԽԱՐՈՒՅԿԻ ՄՈՏ

ԳԱՐԻԿ ԲԱՆԴՈՒՐՅԱՆ



Մենք խարույկ ենք վառել կրկին
Գիշերային անտառում,
Խենթ բոցերը մեր խարույկի
Պար են բռնել խավարում:

Հոկտեմբերիկ ու պիոներ,
Ժպիտներով խանդավառ,
Խարույկի շուրջ պար ենք բռնել,
Մի կրակոտ Սասնա պար:

Եվ նմա՜ն են իրար այնպես
Խարույկն ու մեր պարը թունդ,
Մրցության են ելել ասես
Երկու վարպետ պարախումբ:

Իսկ մրցավար լուսինն էլ, տե՛ս,
Բա՜րձր-բարձր երկնքից
Մերթ բոցին է նայում, մերթ մեզ՝
Աստղերի փունջը ձեռքին:

Եվ նայում է ու շվարում,
Չգիտե ի՞նչ անի նա,
Մեկը մեկից լավ է պարում,
Մրցանակը որի՞ն տա:

— Լուսի՛ն, քեզ մի՜ տանջիր իզուր
Իջի՛ր մեզ մոտ ու պարիր,
Մրցանակիդ պարգևն էլ տուր
Մեր հարազատ ճամբարին:

— Դա պետք է շա՞տ լավը լինի:

— Այո՛: Հորս համար է:

Մարդը դարակի վրայից վերցրեց մի ապարատ և դրեց իմ առջև:

— Սա լա՞վ է նկարում,— հարցրի ես:

— Ամենից լավ, որ դու կարող ես պատկերացնել,— նա ցույց տվեց ինձ այդ ապարատով նկարած մի շարք նկարներ:

— Եվ ի՞նչ արժե սա:

— Հարյուր քսան մարկ,— ասաց վաճառասեղանի ետև կանգնած մարդը:

Ես ընկա ծանր կացության մեջ: Ամոթից կարկամած ստիպված եղա ասել.

— Իսկ չկա՞ մի քիչ պակաս լավը:

— Կա: Ահա սա արժե միայն յոթանասուներկու մարկ:

— Ես այդքան էլ չեմ կարող վճարել: Շաբաթական միայն 30 պֆենիգ գրպանի փող եմ ստանում:

— Դու ուզում ես ապարատը հո՞րդ նվիրել:

— Այո՛,— ասացի ես,— դեկտեմբերին, հետևյալ Նոր տարվա առթիվ:

Մարդը վաճառասեղանի տակից մի բոքս հանեց և ասաց.

— Սա հավանաբար ամենալավն է քեզ համար:

— Ի՞նչ արժե:

— Տասնհինգ մարկ: Եվ եթե դու ուզում ես արտակարգ բան անել, դու յոթ ու կես մարկով կգնես մի քսակ, ա՛յ այս:

— Սա կաշվե՞ է:

— Համարյա: Համենայն դեպս այդպես է երևում:

Ես գնեցի այդ բոքսը ապառիկ: Նա պետք է մնար այդտեղ՝ խանութում, և ես պարտավորվեցի այդտեղ բերել շաբաթական 30 պֆենիգ, իմ ողջ գրպանի փողը:

Ինձ համար մի շատ անհանգիստ տարի սկսվեց: Ամեն շաբաթ ես բերում էի այս խանութը իմ գրպանի փողը, չէի գնում ինձ համար ոչ մի կոնֆետ, ոչ մի թերթ նկարչական թուղթ: Եվ երբ մայրիկս ամ-

# ՊԻՈՆԵՐՈՒՀԻՆ ՍԱՀՄԱՆԻ ՎՐԱ
## (ԲԱԼԼԱԴ)

ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ

*Այս դեպքը տեղի է ունեցել հարավային սահմանի վրա, որի մասին պատմեցին սահմանապահները, մի խումբ գրողներիս հետ կայացած հանդիպման ժամանակ: Պիոներուհի Թամարան, որի մասին կարդալու եք ստորև, հանդիպման վերջում ծաղկեփնջեր մատուցեց մեզ:*

Կա լեռներում ուղեկալ,
Սահմանը՝ գետ է:
Գնում է նա մանրաքայլ,
Մտքերի հետ է...

Ծնվել է նա հյուսիսում,
Բայց դեպքը նրան
Հարավում էր սպասում՝
Սահմանի վրա:

Նայում է շուրջը՝ վայրի
Ժայռեր ու կածան,
Բաց երախներ քարայրի,
Թփեր ու մացառ:

Փշալարն է վնասված,
Լրտես է անցել:
Նայում է նա զարմացած
Ու տեսնում մեկ էլ՝



Ջեկը փռվել է անշարժ,
Խեղդել են նրան,
Մի քիչ այն կողմ՝ մի սերժանտ
Սահմանի վրա,

Եղեգնուտում մեկի հետ
Թավալ է տալիս,
Եղեգները որպես նետ
Մոտիկից գալիս,

Աչքերի մեջ են խրվում,
Կտրատում դեմքը,
Բայց նա ցավին չի տրվում,
Չի դողում ձեռքը:

Բռնած վիզը լրտեսի՝
Սեղմել է չոքած,
Թեև շնչում է հազիվ,
Վիրավոր, հոգնած:

Աղջիկը՝ վախն աչքերում
Կանգնում է մի պահ:
Մառախուղն է պարուրում
Ե՛վ գետ, և՛ ճամփա:

Ու նրանց կողմն է վազում.
— Օգնությո՛ւն, է՜յ...—
Եվ նա էլ չի սպասում,
Պետք է պինդ պահել:

---

տանը ինձ 30 պֆենիգ տվեց դպրոցական ընկերներիս հետ լողալու գնալու համար, ես մնացի նստարանին նստած և միայն իմ լողի հագուստը թրջեցի, որպեսզի մայրս ոչինչ չհասկանա: Հորս նվերի համար մի անգամ նույնիսկ մի ամբողջ մարկ խնայեցի, որ մայրս տվել էր կրկես գնալու համար: Ես միայն կրկեսային երաժշտությունն էի լսում վրանից դուրս և անգիր էի անում դրամարկղի վերևը փակցրված աֆիշը, որպեսզի տանը կարողանամ պատմել, թե ինչ եմ տեսել կրկեսում:

Տոնական օրվա նախօրյակին թե՛ ապարատի, թե՛ քսակի արժեքը մինչև վերջին պֆենիգ վճարված էր: Մարդը փաթաթեց նվերս:

Ես շատ հուզված էի, փաթեթը վերարկուիս տակ բռնած տուն բերի ու թաքցրի անկողնուս մեջ: Ես հրճվում էի վաղվա օրվա համար, նվերիս համար, պատկերացնում էի, թե ինչ հիացած ու զարմացած հայացք կունենա հայրս, ինչպես կուրախանա, տեսնելով գեղեցիկ ապարատը, որ այնքան ուզում էր ունենալ:

— Աննելի՛զե, ընթրում ենք: Հայրդ եկավ,— կանչեց մայրս: Ես շտապեցի հորս օգնելու, որ վերարկուն հանի: Ես վերցրի նրա գլխարկն ու վերարկուն և կախեցի կախարանից, հետո մենք սենյակ մտանք:

— Մեկ օր մնաց մինչև Նոր տարի: Դու ուրա՞խ ես,— հարցրեց հայրս:

— Շա՛տ, հայրի՛կ:

— Ես էլ,— ասաց հայրս ու վեր բարձրացրեց մի փոքրիկ փաթեթ: Նրա աչքերը ուրախ փայլփլում էին:

Ներս եկավ մայրս: Հայրս բացեց փաթեթն ու գոչեց.

— Այստե՛ղ նայեք:

Ջինաթափում է նրան,
Ձեռքերը կապում,
Պիոներուհի Թամարան՝
Աչքերը կապույտ:

Այնտեղ, ուր գետն է դանդաղ
Եվ պղտոր ու խոր,
Պահ էր մտել ջրի տակ
Լրտեսը մի օր:

Ջրասույզի հագուստով
Անցել գետն արագ,
Եղեգնուտի մեջ հետո
Մտել էր դարան...

Ահա գալիս են նրանք,
Գալիս է պետը,
Համբուրում է աղջկան
Ողջագուրվում հետը:

— Ա՜յ թե քաջն ես եղել դու,
Իմ փոքրի՛կ արծիվ...—
Իսկ նա լալիս է, ժպտում
Հեկ ու խելացի:

Ծնվել է նա հյուսիսում,
Բայց դեպքը նրան
Հարավում էր սպասում,
Սահմանի վրա...




Նա ձեռքին բռնել էր մի թանկարժեք լուսանկարչական ապարատ: Ես չգիտեմ, թե հետո ինչ կատարվեց: Ես երբեք այնպես չեմ արտասվել, ինչպես այդ երեկո: Դա իմ կյանքի ամենամեծ հիասթափությունն էր: Ծնողներս չգիտեին, թե ինչ պատահեց ինձ, քանի որ ես ոչ մի բառ չէի արտասանում: Վշտից տաքությունս բարձրացավ, երեկոյան բժիշկ կանչեցին և, երբ ինձ անկողին էին պառկեցնում, հայրս ծածկոցի տակ գտավ ապարատը, իմ գնած լուսանկարչական ապարատը:

Ես արդեն ասացի, որ հորս շատ էի սիրում: Բայց այդ օրվանից սկսեցի ավելի սիրել. ես ոչ մի անգամ նրա ձեռքին չտեսա այն թանկարժեք ապարատը, որ նա ինքն էր իր համար գնել: Հետագա տարիներին նա շատ էր լուսանկարում, բայց միայն իմ բոքսով, որը ես գնել էի տասնհինգ մարկով:

*Գերմաներենից թարգմ. ԼԻԼԻ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԸ*

# ԵԶՈՊՈՍ

*Առասպելական իմաստուն և զվարճախոս Եզոպոսը ծագումով թրակիացի էր, ապրել է մ. թ. ա. VI դարում, եղել է Սամոսի բնակիչ Յադմոնի ստրուկը, որին գնել է բանաստեղծուհի Սաֆոյի եղբայր Քարաքսը: Նա մահապատժի է ենթարկվել Դելփիքում:*

*Սրանք են այն կցկտուր տեղեկությունները, որ Եզոպոսի մասին հայտնում է հույն պատմագիր Հերոդոտը: Իսկ այնուհետև սկսվում է ժողովրդական բանահյուսությունը, որը մեկը մյուսից հետաքրքիր առասպելներով զարդարում է իր սիրելի առակագրի կյանքի ամեն մի դրվագը: Այսպես, ժողովրդական առասպելը Եզոպոսին դարձնում է հին աշխարհում հայտնի յոթ իմաստունների ընկերն ու զրուցակիցը, Լիդիացոց Կրեսոս թագավորի պալատական խորհրդատուն: Նա իր իմաստուն պատասխաններով պարտության է մատնում Կրեսոս թագավորի հակառակորդներին և այլն:*

*Հին հույները և հռոմեացիները իրենց բոլոր առակները կոչել են եզոպոսյան առակներ: Այդ առակները հետագայում թարգմանվել են և ձեռագիր վիճակում, ինչպես և պապիրուսների վրա տարածվել աշխարհով մեկ: Հռոմեացի բանաստեղծ Ֆեդրան (մ. թ. ա. I դարի կեսերին) և հույն բանաստեղծ Բաբրիոսը (մ. թ. ա. I դարի վերջերին) չափածոյի վերածեցին եզոպոսյան առակները: Նրանք կազմեցին եզոպոսյան առակների հիմնական ժողովածուն, որը արտադպրոցական ընթերցանության նյութ դարձավ հունական և հռոմեական դպրոցներում: Եզոպոսյան առակների ավանդույթներից օգտվեցին և մի նոր աստիճանի բարձրացրին Լաֆոնտենը, Լեսսինգը, Կռիլովը:*

*Տպագրում ենք այդ առակներից մի քանիսը՝ բանաստեղծ Վարդգես Բաբայանի թարգմանությամբ:*

## ԿԱՏՈՒՆ ՈՒ ՀԱՎԵՐԸ



*Կատուն լսեց, որ հավերը հիվանդացել են: Նա բժշկի խալաթ հագավ, վերցրեց բժշկական պարագաները, գնաց հավանոց և, կանգնելով դռների մոտ, հարցրեց, թե ինչպես են զգում նրանք իրենց: «Շատ լավ ենք զգում,— ասացին հավերը,— բայց միայն այն դեպքում, երբ դու հեռու ես մեզնից»:*



## ՇՈԳԸ

ՎԱՀԱՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ

Սար ու դաշտում հուր էր վառել
Ամառային արևը բարկ,
Ուսուցչուհին իր սաներին
Հավաքեց մեծ մի ծառի տակ:

Շոգ է, շոգ է ամենուրեք,
Միջօրեին էլ ո՞ւր գնան:
Մեղմ, կովաշունչ օրեր, ու՞ր եք,
Ու՞ր եք, անուշ հովե՞ր զարնան:

Իր սաներից մեծ էր հազիվ
Ուսուցչուհին յոթ-ութ տարով,
Թիկն էր տվել կանաչ ծառին
Ու տարվել իր երազներով:

Մոռացել էր, որ քիչ հեռվում,
Շողշողալով արևի տակ,

## ԱՂՎԵՍՆ ՈՒ ՄԱՄԽԵՆԻՆ

Աղվեսը մագլցեց ցանկապատի վրա և բռնեց մամխենուց, որ չընկնի: Մամխենու փշերը ծակծկեցին աղվեսին, և աղվեսը նախատեց նրան ու ասաց. «Օգնության համար քեզ դիմեցի, բայց դրանից իմ վիճակն ավելի վատացավ»: Մամխենին պատասխանեց. «Սխալվել ես, եղբա՛յրս, սխալվել ես, ես ինքս եմ պատահողից կառչում, իսկ դու եկել ու ինձնի՞ց ես կառչում»:

## ԱՔԱՂԱՂՆ ՈՒ ԿԱՔԱՎԸ

Մի մարդ աքաղաղներ էր պահում: Շուկայից մի ձեռնասուն կաքավ գնեց, որ աքաղաղների հետ պահի: Բայց աքաղաղները սկսեցին նրան կտցահարել ու հալածել: Կաքավը գլուխը կախեց ու մտածեց, որ ինքը նրանց ցեղից չէ, դրա համար էլ իրեն չեն սիրում: Բայց շատ չանցած, աքաղաղները՝ կտուցները սրած, իրար վրա հասան և արյունլվիկ արին մեկմեկու: Կաքավը տեսավ և ինքն իրեն ասաց. «Չէ՛, ես էլ չե՛մ բողոքում, որ նրանք ինձ բզկտում են, հիմա տեսնում եմ, որ նրանք իրենց էլ չեն խնայում»:

## ՄԱԾԿԱԼՆ ՈՒ ԳԱՅԼԸ

Մածկալն արձակեց եզները և քշեց ջրելու: Իսկ սոված գայլը որս փնտրելիս տեսավ լքված գութանը, լիզեց եզան լուծը, հետո կամաց-կամաց, ինքն էլ չնկատեց, թե ինչպես գլուխն անցկացրեց նրա մեջ և, չկարողանալով ազատվել, վարելահողի միջով քարշ տվեց գութանը: Մածկալը վերադարձավ, նրան տեսավ ու ասաց. «Ա՜յ դու զզվելի չարագործ, երանի չէ՞ր ավազակությունն ու կողոպուտը թողնեիր և զբաղվեիր հողագործությամբ»:

## ՆԱԽՐԱՊԱՆԸ



Նախրապանը հորթը կորցրեց, ընկավ դեսուդեն, բայց իզուր, և Զևսին խոստացավ, որ մի այծ մատաղ կանի, եթե գողը գտնվի: Նա մտավ անտառ և տեսավ, որ առյուծը խժռում է իր հորթը: Նախրապանը լեղաճաք եղած՝ ձեռքերը պարզեց դեպի երկինք և բացականչեց. «Օ՜, մե՜ծդ իմ Զևս, ես քեզ խոստացա մի այծ մատաղ անել, եթե օգնես, որ գողին գտնեմ, իսկ հիմա մի ամբողջ եզ եմ խոստանում, եթե ինձ գողից փրկես»:

## ԱՌՅՈՒԾՆ ՈՒ ԱՂՎԵՍԸ

Առյուծը ծերացել էր, այլևս չէր կարողանում իր սնունդը ուժով ձեռք բերել, և որոշեց այդ բանն անել խորամանկությամբ: Նա մտավ քարայր և, հիվանդ ձևանալով, պառկեց: Գազաններն սկսեցին նրան այցելության գալ, իսկ նա բռնում էր նրանց ու խժռում: Շատ գազաններ ոչնչացան: Վերջապես աղվեսը կռահեց նրա խորամանկությունը, գնաց և, քարայրից հե-

Վետվետում էր, ուրախ հնում,
Սարից փախչող մի կով գետակ:

— Տե՛ս, քնել է մեր դասատուն,—
Փսփսում է մեկը կամաց:
Տարածվում է լուրը խսկույն,
Եվ հենց ա՛յդ էլ պետք էր նրանց:

Վեր են կենում նրանք մեկ-մեկ
Վազում դեպի գետը վարար,
Ա՜խ, չէր եղել ջուրը երբեք
Այդքան կուլալ ու զովարար:

Ջուր են ցանում իրար վրա,
Աղմկում են, կվարճանում,
Ե՛կ, դասատո՛ւ, տեսնենք հիմա
Ո՞նց ես նրանց ջրից հանում...

...Երբ դաշտից տուն բերեց նրանց
Երիտասարդ ուսուցչուհին,
Արևն արդեն մայր էր մտել,
Ճնկշնկում էր մարմանդ քամին:

Նկ. ՎԱՂԱՐՇԱԿ ԱՐԱՄՅԱՆԻ

ոու կանգնելով, հարցրեց, թե ինչպե՞ս է ապրում: «Վատ»,— պատասխանեց առյուծը և հարցրեց, թե ինչու ներս չի մտնում: Աղվեսը պատասխանեց. «Ես կմտնեի, եթե չտեսնեի, որ շատ հետքեր են տանում դեպի քարայր, իսկ քարայրից ոչ մի հետք դուրս չի գալիս»:

## ԱՌՅՈՒԾՆ ՈՒ ԷՇԸ

Առյուծն ու էշը որոշեցին ապրել միասին և գնացին որսի: Նրանք հասան մի քարայր, որտեղ վայրի այծեր կային: Առյուծը կանգնեց մուտքի մոտ, որ դուրս փախչող այծերին բռնի, իսկ էշը ներս մտավ և սկսեց զռալ, որ վախեցնի նրանց ու դուրս քշի: Երբ առյուծն արդեն բազում այծեր էր բռնել, էշը դուրս եկավ և հարցրեց՝ հը՞, ինչպե՞ս է, լա՞վ էի դուրս քշում այծերին: Առյուծը պատասխանեց. «Լավն էլ ի՞նչ է, ես ինքս կվախենայի, եթե չիմանայի, որ դու էշ ես»:

## ՔԻԲԵԼԱՅԻ ՔՐՄԵՐԸ

Քիբելայի քրմերը մի էշ ունեին, որով իրենց թափառումների ժամանակ բեռ էին փոխադրում: Եվ երբ էշը հալից ընկավ ու սատկեց, կաշին քերթեցին ու դափի երեսը քաշեցին՝ իրենց պարերի համար: Մի անգամ նրանց հանդիպեցին ուրիշ թափառական քրմեր և հարցրին, թե որտե՞ղ է նրանց էշը: Նրանք պատասխանեցին. «Սատկեց, բայց հիմա էլ այնքան ծեծ է ուտում, որքան կենդանի ժամանակ չէր կերել»:

## ՈՒՂԵՎՈՐՆԵՐՆ ՈՒ ՍՈՍԻՆ

Ամառվա կեսօրվա շոգին, սաստիկ հոգնած ուղևորները ճանապարհ էին գնում: Նրանք տեսան մի սոսի, մոտեցան և պառկեցին նրա տակ հանգստանալու: Նայելով սոսու ոստերին, նրանք իրար մեջ խոսեցին. «Բայց ախր անպտուղ է այս ծառը և մարդկանց համար անօգուտ»: Սոսին նրանց պատասխանեց. «Ապերախտ եք դուք, իմ հովանուց օգտվում եք և տեղնուտեղն էլ ինձ անվանում անպտուղ և անօգուտ»:

## ԱՂՈՎ ԲԵՌՆՎԱԾ ԷՇԸ



Աղով բեռնված էշը անցնում էր գետի միջով, բայց սայթաքեց ու ընկավ ջուրը: Աղը հալվեց և էշի բեռը թեթևացավ: Էշն ուրախացավ, և հաջորդ անգամ, սպունգով բեռնված, երբ մոտեցավ գետին, կարծեց, որ եթե ընկնի, նորից ոտքի կկանգնի թեթևացած բեռով, և դիտմամբ սայթաքեց: Բայց այնպես եղավ, որ սպունգները ջրում ուռան, էշը չկարողացավ այլևս բարձրանալ և խեղդվեց:

# ՍԵՎՈՒԿԸ

*ԲԵՆԻԿ ՍԵՅՐԱՆՅԱՆ*

Գայլերը երեքն էին և երեք կողմից վրա էին տվել: Չորրորդ կողմը ծառաբունն էր:

Մեջքը հաստաբուն կաղնուն սեղմած, եղջերուն պաշտպանվում էր: Չէր փախչում, թեև միայն այդ միջոցով կարող էր փրկվել: Նա եղջյուրներով մոլեգնորեն հարվածում էր աջ ու ձախ: Երբեմն էլ ուժեղ, ջղաձիգ ոտքերի կճղակներով էր հարվածում: Կտրոբեր, եթե գործը մեկի հետ լիներ: Բայց երեքի դեմ մենակ էր:

Մահին աչքի տակ առած, ռունգերից ու աչքերից կրակ ու բոց ժայթքելով, նա մի կերպ ետ էր մղում գիշատիչների գրոհները:

Գայլերը պտտվում էին նրա շուրջը: Վրա էին վազում աջից ու ձախից: Խաբս էին տալիս ու նորից վրա գալիս:

Ամեն անգամ նրանց մռութն ու ժանիքները համարյա քսվում էին կռիի փշաքաղված մաշկին:

Եղջերուն վայրկյան առ վայրկյան ուժասպառվում էր: Մեջքն ավելի ու ավելի էր սեղմում կաղնու բնին, որտեղ գետնից սկսվող մի նեղ, խոր փչակ կար: Նա կարծես ուզում էր իր ահագին մարմինը խցկել փչակի մեջ, ետևի ոտքերն արդեն մտել էին փչակը:

Այդ վիճակում էլ եղջերուն տապալվեց գետին: Գայլերը դրան էին սպասում: Վրա ընկան, սկսեցին հոշոտել:

Հենց այդ միջոցին մոտակա շավղում հայտնվեց անտառապահ Ալեքը, որ վաղուց թողել էր որսորդությունը, բայց չէր բաժանվում իր որսորդական երկփողանի հրացանից:

Ալեքը գայլերին տեսնելն ու հրացանն ուսից իջեցնելը մեկ արեց: Հաջորդ վայրկյանին երկփողանու կույգ որոտներից ձորերը դմբդմբացին: Սպիտակ ծուխը երբ քաշվեց, գայլերը չկային: Մեկը փռվել էր գետնին, երկուսը չքվել էին:

Ալեքը մոտեցավ եղջերուին: Ի՜նչ եղջերու, մի կարմիր, հոշոտված երինջ: Ծերունին ափսոսաց, որ ուշ վրա հասավ: Գայլն ընկած էր եղջերվից քիչ հեռու:

— Տիրամե՜ռ, բա սա անելու բան է՞ր,— ասաց Ալեքը քթի տակ:

Մեկ էլ հանկարծ փչակի խորքից երկու սևուկ, կլորիկ աչքեր պսպղացին: Ալեքը մոտեցավ, նայեց ավելի ուշադիր: Եղջերուի ձագուկն էր, փոքրիկ, գեղեցիկ մի արարած: Դողում էր ամբողջ մարմնով: Դնչիկը պատած էր քրտինքով:

Հին որսկանը հասկացավ ամեն ինչ:

Հանդիպելով գայլերին, մայր եղջերուն փչակն էր գցել ձագուկին, իր մարմնով պաշտպանել նրան: Զոհվել էր, բայց փրկել էր ձագուկի կյանքը:

Ալեքը դժվարությամբ կարողացավ մայր եղջերուի ոտքերը հանել փչակից, որպեսզի դուրս բերի ձագուկին: Հետո, երբ ձեռքը մեկնեց դեպի փչակի խորքը, փոքրիկը ոչ միայն խույս չտվեց, այլև ինքն ընդառաջ եկավ:

Ալեքը եղնիկի ձագին ուսն առավ, ինչպես նախրապաններն ուսն են առնում ու տուն տանում հանդում ծնած կովի հորթուկին, և քայլերն ուղղեց դեպի անտառապահի իր տնակը:

Այստեղ նա տնակի մի անկյունում տեղ առանձնացրեց եղջերուի ձագի համար ու սկսեց խնամել նրան: Կաթ էր տալիս, շաքար, հաց: Անտառի ամենաքաղցր, հյութեղ պտուղներն ու խոտերն էր բերում նրա համար: Հետո նրանք այնքան մտերմացան, որ էլ վանդակի կարիք չեղավ: Ալեքը նրան նույնիսկ արոտի էր ուղարկում: Եղջերուն գնում էր մինչև անտառի եզրը, արածում, խլշկոտալով նայում էր դեպի ծմակի խորքը ու ամենահասարակ խշրտոցից ահ առած՝ փախչում տուն:

Սև աչքերի պատճառով Ալեքը նրա անունը Սևուկ էր դրել: Ափի մեջ աղ էր ցանում, հեռվից կանչում: Սևուկը մոտենում էր, լիզում:

Այսպես նրանք ապրեցին մի ամբողջ տարի: Եղջերուն մեծացավ, փարթամացավ:

* * *

Աշնան մի օր Ալեքն իր տնակի առջև ուրագով անիվի սոլեր էր տաշում, իսկ Սևուկը հոտոտում էր թարմ տաշեղների խեժաբույրը:

Մոտակա բացատից ինչ-որ մռնչոց լսվեց, հետո՝ ծորուն բառաչ: Ծանոթ էր այդ ձայնը Ալեքին: Պախրացուն էր ձայն տալիս իր կույգին: Սևուկը խլշկոտաց: Սկզբում հանգիստ էր: Բայց հետո սկսեց առջևի ոտքով քանդել գետինը: Կարծես կռվի էր պատրաստվում:

Ալեքը վեր կացավ, շոյեց Սևուկի ճակատը, վիզը, աչքերը: Եղջերուն խաղաղվեց:

Բայց երբ մի քանի օր հետո պախրացուի մնչոցի հետ կրկնվեց Սևուկի անհանգստությունը, որսկանը կգաց, որ այլևս դժվար պիտի լինի նրան պահելը: Նա գրկեց Սևուկի վիզը, համբուրեց ճակատը, հետո ձեռնափը նրա ողորկ գավակին խփելով, թեթև հրեց դեպի անտառը:

— Գնա՜, սիրելի՜ս,— ասաց,— գնա վայելի՜ր քո ազատությունը:

Ետ շրջվեց, ծանր քայլերով հեռացավ Սևուկից: Եղջերուն դեռ կանգնած էր տեղում: Վիզը ծռելով, նայում էր որսկանի ետևից: Կարծես պատրաստվում էր տրտինգ տալ, հասնել տիրոջը: Բայց ծմակի խորքից եկող նոր մնչոցը ետ պահեց նրան:

Սևուկը սկսեց մոլեգնորեն քանդ անել: Առջևի ոտքով կանաչախառը հողը քանդում էր ու օդ հանում: Հետո սկսեց պոչերով քանդել գետինը: Մեկ էլ պոկվեց տեղից ու գնդակի արագությամբ սուրաց դեպի ծմակը:

***

Անցան օրեր: Անտառում խոր աշուն էր: Թղկինները ծիրանագույն շողք էին գցել շրջապատին, հացենիները՝ մուգ կարմիր, բոխիները, ածարները, կաղնիները՝ վառ դեղին: Այսպես, ամեն ծառ, ամեն թուփ իր գույնն էր տվել անտառին, ու աշնան անտառը բռնկվել անծուխ բոցկլտում էր: Հարթավայրերում արտերը վաղուց հնձվել-կալսվել էին, խոտը խանձվել, չորացել էր:

Մինչդեռ անտառի խորքում բացատներ կային, ուր դեռ ալիք էր տալիս հյութառատ կանաչը:

Ալեքը, գերանդին առած, խոտ էր հնձում հեռու բացատներում, որպեսզի հետո հավաքի, գյուղ ուղարկի՝ կոլխոզի մատղաշի համար:

Գործով տարված, նա չնկատեց, թե ինչպես երկինքը մթնեց, ամպերը վրա եկան ու մի այնպիսի ձնաբուք սկսվեց, այնպիսի բորան, որ շուտով սարձոր ծածկվեցին սպիտակ ձյունով: Ալեքը գերանդին թաղեց խոտի բլուրի տակ, բռնեց տան ճամփան: Ձյունը դեռ շարունակում էր գալ: Քայլելը դժվարանում էր: Ձնափոշին այնպես էր երեսը ծեծում, որ աչքերը մթնում էին:

Մեկ էլ, այդ նեղ միջոցին, հին որսկանն աչես բնապդով պգաց, որ անտառից պոկվելով, դեպի իրեն է վազում մի ինչ-որ սև ստվեր: «Գայլը»,— շամփրեց միտքում: Լավ է, հրացանը մոտն էր: Ուսից իջեցրեց և ուղղեց մոտեցող կենդանու կողմը: Այն է, պիտի քաշեր ձգանը, երբ կարմանքից քարացավ:

Սևուկն էր:

Եղջերուն եկավ կանգնեց նրա առջև: Խիստ հևում էր: Ալեքը գրկեց Սևուկի վիզը, սկսեց համբուրել նրա թաց, ձյունոտ ճակատը, աչքերը, դունչը:

— Դու օգնության եկար, հա՞, Սևո՛ւկ ջան, թե՞ սա պատահական հանդիպում էր,— ասաց գորովանքով:— Հիմի ես մենակ չեմ: Էլ չեմ վախենում: Գնանք:

Ու նրանք միասին ճանապարհ ընկան դեպի անտառապահի հեռավոր տնակը:

# ԷԴՈՒԱՐԴ ԼԻՐ

Էդուարդ Լիրը (1812—1888) անգլիացի գրող է և նկարիչ: Նրան չի հաջողվել հաճախել դպրոց և կանոնավոր կրթություն ստանալ: Դեռևս փոքրիկ ու վատառողջ մի տղա, նա իր ամբողջ ժամանակը նվիրում էր նկարելուն: Հատկապես սիրում էր ծաղիկներ ու թիթեռներ, կենդանիներ ու թռչուններ նկարել:

Արդեն պատանի հասակում Լիրը ճանաչված նկարիչ էր: Այն ժամանակ լուսանկարչություն գոյություն չուներ, և Լիրի նկարած կենդանաբանական գրքերը մեծ հռչակ բերեցին երիտասարդ հեղինակին: Հետագայում Լիրը նկարազարդում էր իր սեփական ստեղծագործությունները, այդ թվում նաև մանուկների համար գրած գրքերը:

Տպագրում ենք մի հատված նրա «Անիմաստ երգեր ու պատմվածքներ» գրքից:



# ՇՈՒՐՋԵՐԿՐՅԱ ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴՈՒԹՅՈՒՆ



*Վաղուց, շատ վաղուց չորս մարդուկ եղբայրներ կային՝ Վալլտը, Սլինգզբին, Գայը և Լայոնելը: Նրանք որոշեցին ճանապարհորդել, աշխարհ տեսնել: Գնեցին մի մեծ նավ, որպեսզի ծովով նավարկեն աշխարհի մյուս ծայրը և այնտեղից ցամաքով վերադառնան: Նավակը կապույտ գույնի էր՝ կանաչ գծերով, իսկ առագաստները ներկված էին դեղին ու կարմիր: Մեկնելիս նրանք իրենց հետ վերցրին մի փոքրիկ կատու,*

որպեսզի նա ղեկավարի ու հսկի նավակը և մեկ էլ ծերուկ Քուանգըլ Ուանգլին, որպեսզի իրենց համար ճաշ եփի և թեյ պատրաստի: Թեյի համար նրանք մի մեծ թեյաման գնեցին: Առաջին տասը օրը հրաշալի նավարկեցին: Ուտելիքը առատ էր, որքա՜ն ասես ձուկ կար: Երկար թիակով ձուկը հանում էին ծովից, իսկ Քուանգլ-Ուանգլը անմիջապես եփում էր: Փիսիկը ուտում էր ձկների փշերը և դրանով բավարարվում: Այնպես որ բոլորն էլ խիստ գոհ էին: Ամբողջ օրը Վայլտը զբաղված էր խնոցու մեջ աղի ջուր լցնելով, իսկ նրա երեք եղբայրները ուժգին հարում էին այն, որպեսզի կարագ դառնա՝ մի բան, որ հազվադեպ է պատահում, եթե չասենք, որ ընդհանրապես չի պատահում: Երեկոյան բոլոր տղաները միասին մտնում էին թեյամանի մեջ և այնտեղ հանգիստ քնում: Փիսիկն ու Քուանգլ-Ուանգլը այդ ժամանակ նավակն էին վարում: Բավական ժամանակ անց, ճանապարհորդները հեռվում ցամաք նըկատեցին: Երբ մոտեցան, տեսան, որ դա ջրից շինված կղզի է՝ ցամաքով շրջապատված: Կղզին շատ գեղեցիկ էր: Այնտեղ աճում էր միայն մեկ ծառ՝ 503 ոտնաչափ բարձրությամբ: Երբ ճանապարհորդները նավից ցամաք ելան, ի մեծ զարմանս իրենց, տեսան, որ կղզին լի է հորթի մսի երշիկներով և շոկոլադի գնդիկներով: Ուրիշ ոչինչ չկար այնտեղ: Նրանք բոլորն էլ միասին մագլցեցին միակ ծառը, որպեսզի տեսնեն, թե մարդ կա՞ արդյոք կղզում: Ծառի գագաթին մի շաբաթ մնալուց և ոչ ոքի չտեսնելուց հետո, նրանք եզրակացրին, որ կղզին զուրկ է բնակչությունից, ծառից վար իջան, նավակը բարձեցին երկու հազար հորթի մսի երշիկներ և մեկ միլիոն շոկոլադի գնդիկներ: Դա մի ամբողջ ամսվա ուտելիքի պաշար էր, և նրանք մի ամիս ճամփորդում էին ուրախ ու անհոգ: Դրանից հետո նրանք հասան մի ուրիշ ցամաքի: Այնտեղ 65 հատ կապույտ պոչերով կապույտ թութակներ կողք-կողքի թառել էին ցողի մի կաթիլի վրա և խորը քուն էին մտել: Ցավով պետք է ասեմ, որ փիսիկը և Քուանգլ-Ուանգլը կամացուկ մոտեցան և պոկեցին 65 թութակների պոչի փետուրները: Վայլտը դրա համար խիստ հանդիմանեց նրանց, բայց և այնպես բոլոր 260 փետուրները ամրացրեց իր գլխարկին: Գլխարկը շատ գեղեցիկ տեսք ստացավ:

Հաջորդ դեպքը պատահեց նեղուցում: Այնտեղ այնքան շատ ձուկ կար, որ նավակը առաջ չէր շարժվում: Ստիպված 6 շաբաթ մնացին այդտեղ, մինչև որ գրեթե բոլոր ձկները կերան վերջացրին: Երբ ձկներին ծովից հանում էին, նրանք արդեն եփված պատրաստ էին և սոուսով ծածկըված, այնպես որ ոչ մի դժվարություն չկար: Մնացած մի քանի ձկները սկսեցին գանգատվել, որ ցուրտ է և իրենք քնել չեն կարողանում, որովհետև որ կողմ նայում ես, թևերը թափահարելով ճախրում են բևեռային արջերը և արևադարձային շները: Վայլտը նրանց համար բրդե շրջազգեստներ հյուսեց, իսկ Սլինգզբին մի քանի կաթիլ թմրադեղ տվեց: Դրանից հետո ձկները տաքացան և քնեցին: Հետո նրանք եկան մի երկիր, որը ամբողջովին պատած էր նարնջի հսկայական ծառերով: Ծառերը կռացել էին պտուղների ծանրությունից: Ցամաք դուրս գալիս նրանք իրենց հետ վերցրին թեյնիկը, որպեսզի նարինջ հավաքեն: Մինչ նրանք նարինջ էին հավաքում, ուժգին քամի բարձրացավ և քշեց Վայլտի գլխարկին ամրացված թութակի փետուրների մեծ մասը: Այդ դեռ ոչինչ: Դրանից հետո միլիոնավոր նարինջներ տեղացին նրանց գլխին: Բոլորը այնքան ծեծվեցին, մինչև որ ինչքան ուժ ունեին փախան: Թեյամանի վրա նարինջների թափվելը ահռելի աղմուկ էր բարձրացրել: Եղբայրները շատ հուզված, վախեցած ու տանջված, մի կերպ նավակ հասան: Քուանգլ-Ուանգլի աջ ոտքը այնպես էր ցավել, որ գլուխը հողաթափի մեջ դրած՝ նա ամբողջ մի շաբաթ անշարժ նստած մնաց:

Անգլ. թարգմ. ՄԻՇԱ ԳՅՈՒՏՅԱՆԸ

## ՑՈՂԸ

ԼԻՊԱՐԻՏ ՍԱՐԳՍՅԱՆ

Մի չոր տարի անձրև չկար,
Տոթ էր գալիս հարավից,
Երկինքն, ասես, դարձել էր քար,
Հողն էր ճաքում ծարավից:
Թոշնում էին ծաղիկ ու խոտ
Ու չորանում աչքը բաց,
Աստղոտ հեռվից նրանց մի օր
Տեսավ լուսինն ու խղճաց:
Ու արծաթե իր աչքերից,
Արցունքները իջան ցած:
Իջան ինչպես քրոջ համբույր,
Ընկան հողին շիթ առ շիթ,
Ծաղիկների աչքում տխուր
Ցոլաց հույսի մի ժպիտ:
Եվ այդ օրից խորունկ քնից,
Երբ աշխարհն է արթնանում,
Ծաղիկներին՝ դարձած ցողիկ,
Այդ արցունքն ենք մենք տեսնում:

*Ճանաչի՛ր հայրենի բնաշխարհը*



# ՋՐԱՅԻՆ ՕՁ

*ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ*

Այս օձից հանդիպում է Հայաստանի բոլոր վայրերում, միայն թե մոտերքում ջուր լինի՝ առվակ, գետակ, գետ, ջրավազան, լիճ: Ծովի մակերևույթից բարձրությունն էլ շատ նշանակություն չունի. նա հանդիպում է թե՛ Մեղրու ցածրադիր ջրափերին, թե՛ Սևանի մեջ թափվող լեռնային գետակներում:

Ինչո՞ւ է նրա կյանքը կապված ջրի հետ: Որովհետև ջրի մեջ և նրա ափին է իր հիմնական սնունդը՝ ձուկ, գորտ և այլն:

Ջրային օձի կյանքին ես որոշ չափով ծանոթ եմ Սևանից. ձկնորսությանս ընթացքում առիթ եմ ունեցել հանդիպելու նրան՝ մերթ մանր ձկներով հարուստ քարերի արանքներում դարան մտած, մերթ զուլալ ջրերում օղակ-օղակ լողալիս, մերթ հարձակվելիս իր իր զոհի վրա:

Այս օձերը հաճույքով սնվում են Սևանի ծանծաղուտներում ապրող ձկնիկներով և դրանով որոշ վնաս են հասցնում մեր ձկնատնտեսությանը: Երբ ես հանգըստանում էի Սևանի արևելյան ափին՝ Կարճաղբյուր գյուղում, երբեմն օձերի էի հանդիպում ձկնաբուծարանի շրջակայքում, բակում՝ ավազանների մոտ:

— Ի՞նչ բանի են այստեղ օձերը,— հարցրի ես ձկնաբուծարանի դիրեկտոր Քարիտոնին:

— Եկել են ձկնիկ փախցնելու...

Կգան, դե իհարկե կգան, այդտեղ միլիոններով ձկնիկներ են աճեցնում ու բաց թողնում լիճը: Ու Քարիտոնն ինձ այսպիսի մի դեպք պատմեց:

Մի անգամ ջրավազաններից մեկը օձ է մտնում և սկսում է մեկը մյուսի ետևից կուլ տալ անպաշտպան ձկնիկներին: Բռնում են այդ օձին, մի ռուս պրոֆեսոր-ձկնաբույծի հետ միասին ճեղքում են սողունի փորը և նրա որովայնից դուրս են հանում 265 նոր կուլ տված և դեռևս չմարսված ձկնիկներ:

Ահա օձի մեկ «կերաբաժինը»: Եթե Սևանի ափին ապրող օձերից յուրաքանչյուրը այդքան ձկնիկ խըժռի, դժվար չէ պատկերացնել, թե որքան մեծ կլինի այդ սողունների տված վնասը մեր ձկնարդյունաբերությանը: Բայց բարեբախտությունն այն է, որ ջրային օձերի քանակը շատ չէ Սևանի ափերին, մյուսն էլ այն, որ այդ սողունները միայն ձկնով չեն սնվում, նրանք ուտում են նաև այլ մանր կենդանիներ ու միջատներ և, մանավանդ՝ գորտեր:

Այն վայրում, ուր Գավառ գետը լիճն է թափվում, մամռակալած ու երկարուկ մի ջրափոս կա: Մի անգամ այդ ջրափոսի մոտ մեր ավտոմեքենան թաղվեց ավազների մեջ: Շրջակայքում ոչ քար կա, ոչ փայտ, ի՞նչ անենք: Ջրափոսի ափերի ավազը, որ անցյալում լճի հատակին էր եղել, ջրի ծանրության տակ մամլված էր և մի տեսակ փափուկ շերտաքարեր էր կազմել: Այդ շերտաքարերից որը շուռ տվինք՝ տակը օձ կար կուտակ եկած: Իսկ մի քանիսի տակ օձերի ամբողջ ընտանիքներ էին տեղավորված: Մեր արարքից անհանգստացած՝ նրանք ջուրն էին նետվում:

Ինչո՞ւ են հատկապես այստեղ բնակվել այդ սողունները, ինչո՞վ են ապրում այս մերկ ավազների մեջ:

Իմ այդ հարցի պատասխանը այն բազմաթիվ գորտերն էին, որ դուրս պրծած աչքերով նայում էին մեզ ջրափոսի կանաչ ջրիմուռների միջից: Իսկ ափերին ցատկոտում էին նրանց բզեզաչափ ճուտերը՝ տասնյակներով, հարյուրներով... Ահա և հիանալի կեր օձերի համար:

Երկար չէին այս օձերը և ոչ էլ հաստ: Նրանցից մեկին սպանեցինք և դիտեցինք մոտիկից. գորշականաչավուն էր, իսկ մեջքին ցրված էին մուգ խալեր, փորի տակը ճերմակավուն էր: Ցամաքում նրա գույները խամրած էին, բայց Սևանի զուլալ ջրի մեջ կենդանի լողալիս շողշողում է և շատ գեղեցիկ տեսք ունի: Հիանալի լողում է, ջրի տակ էլ երկար է մնում:

Ջրային օձը զուգավորվում է ապրիլ-մայիս ամիսներին: Հունիսի վերջերին—հուլիսին դնում է 5—12 ձու: Ձագերը ծնվում են օգոստոսին:

Այս օձերը ձմեռում են երկրի մակերևույթի ճեղքերում, կրծողների բներում, մանավանդ՝ ջրափնյա ժայռերի արանքներում: Պատահում է, որ ձմեռելու համար իրար գլխի կուտակվում են մի քանի հարյուր օձ: Գարնանամուտի տաք օրերին դուրս են սողում իրենց բնից, արևկող անում քարերի վրա, իսկ ցուրտը ընկնելիս դարձյալ քաշվում են իրենց բույնը:

Օրվա ռեժիմն էլ այսպես է. առավոտները դուրս է գալիս բնից, բայց քանի դեռ ցուրտ է՝ թմրած է ու դանդաղաշարժ: Մարմինը տաքանալու հետ սկըսում է ակտիվանալ և որս անել: Երեկոյան, որսից հետո, նորից դուրս է ելնում ջրից և քաշվում իր թաքստոցը, որ կարող է լինել մի քարի տակ, գուղձի խոռոչ, չոր եղեգնի խուրձ և այլն: Օրվա շոգ ժամերին սիրում է պառկել արևի տակ և տաքանալ:

Այս սողունից Ափշերոնի թերակղզում այնքան շատ կա, որ մեկ տարում որսացել են 60 հազար օձ և նրանց մորթիները հանձնել կաշվի արդյունաբերության ձեռնարկություններին:




## ԿԱՐՄՐԱԾԱՌԸ

Հարուստ է Դիլիջանի բուսական աշխարհը: Նրա անտառներում աճում են սաղարթավոր և փշատերև ծառերի ու թփերի շուրջ 130 տեսակներ: Փշատերև ծառատեսակներից ամենից հետաքրքիրը և արժեքավորը կարմրածառն է: Պատմական տվյալների համաձայն այս ծառատեսակը Կովկասում տարածվել է Արևելյան Աֆղանստանից, երբ Աֆղանստանի և Կովկասի միջև եղել է Արալո-Կասպիական ծովը: Հետագայում այդ ծովը չքացել է, սակայն կարմրածառը շարունակել է գոյատևել:

Հայաստանում կարմրածառերի կարելի է հանդիպել միայն Դիլիջանի անտառներում, հատկապես Ախնաբաթ վանքի շրջակայքում: Աճելով ստվերոտ, խոնավ տեղերում, սաղարթավոր ծառերի հարևանությամբ, կարմրածառերը ունեն 25—35 մետր բարձրություն, մոտ մեկ մետր տրամագիծ: Երիտասարդ կարմրածառի կեղևը բարակ է, նրա ասեղները թունավոր են: Տերևափթթը տեղի է ունենում 6—8 տարին մեկ անգամ: Կարմրածառի արական տեսակը հասունանում, սերմ է տալիս 25—30, իսկ իգական տեսակը՝ 30—35 տարվա ընթացքում: Սերմերը իրենց ծլունակությունը պահպանում են չորս տարի: Կարմրածառը, սիրելով ստվերոտ, խոնավ վայրեր, աճում է խիստ դանդաղ: Առաջին վեց տարում, յուրաքանչյուր տարի աճում է 2—3 սանտիմետր: Նրա բուռն աճը սկսվում է 100 տարուց հետո: Նա նաև բերք է տալիս, պտուղը նման է դեղնակարմրավուն փոքրիկ ուլունքի և մեղրի համ ունի:

Կարմրածառը աշխարհին հայտնի է իր երկարակեցությամբ և ամրությամբ, ունի բընական փայլ: Նրա կյանքի տևողությունը հասնում է 1500—3000 տարվա: Հողի տակ, ջրի մեջ առանց փտելու կարող է պահպանվել մի քանի հարյուր տարի: Կարմրածառի փայտից պատրաստվում է թանկարժեք կահույք:

ԳԵՎՈՐԳ ԶԱՐԵՆՑ

# ԻՆՉՊԵՍ ԽՈՒՍԱՓԵԼ ԿԱՅԾԱԿԻ ՀԱՐՎԱԾԻՑ

*Ծովափին էի: Ջինջ, անամպ օր էր: Բայց ահա հետզհետե հորիզոնում երևացին քուլա-քուլա ամպեր, որոնք, շատ չանցած, խտանալով դարձան գորշ, կապարագույն: Սկսվեց ամպրոպը: Շլացուցիչ փայլատակումներն ուղեկցվում էին ուժգին դղրդյուններով, տեղատարափով ու կարկուտով: Մարդիկ խուճապահար դեսուդեն փախան: Բայց ամենից շատ վախեցան երեխաները, որոնք մոտիկ ճամբարից այդտեղ էին եկել ձուկ որսալու: Նրանք, ոտից-գլուխ ջուր դարձած, գլուխները կորցրած, վազվզում էին, որ մի հարմար թաքստոց գտնեն: Մեծ դժվարությամբ հաջողվեց նրանց հավաքել ու հանգստացնել:*

*Բայց ոչ միայն երեխաները, այլև մեծերից շատերը չգիտեն, թե ինչպես պետք է իրենց պահեն ամպրոպի ժամանակ, ինչպես պաշտպանվեն կայծակից, անվտանգ տեղ ընտրեն անտառում, դաշտում կամ լեռներում: Այդպիսի դեպքում, մարդ երբեմն, սարսափից և անգիտությունից, իրեն գցում է այնպիսի տեղեր, ուր շանթահարվելու հավանականությունն ավելի մեծ է:*

*Եկեք մի քիչ ավելի մոտիկից ծանոթանանք բնության այդ զարհուրելի երևույթին, որպեսզի ճանաչելով նրան՝ ավելի քիչ վախենանք ու կարողանանք լավ պաշտպանվել: Կայծակը, ինչպես գիտեք, էլեկտրական բռնկում է, որն առաջանում է այն ժամանակ, երբ ամպերի մեջ լիցքերը հասնում են ամենամեծ լարվածության: Բռնկումը կատարվում է զիգզագաձև հարվածներով, որոնք իրար են հաջորդում միջին հաշվով 10 վայրկյան անց: Լուսանկարչության օգնությամբ հաջողվել է պարզել, որ կայծակի տրամագիծը լինում է 30—120 մմ: Առաջին էլեկտրական լիցքաթափման պահին օդը ճեղքվում է և առաջանում բավականին ուժեղ հարվածող ալիք: Հենց դա էլ ամպի որոտն է: Առավել վտանգավոր է այն կայծակը, երբ էլեկտրական պարպումը կատարվում է ամպի և գետնի միջև: Այդպիսի կայծակից մարդիկ և կենդանիները մեծ մասամբ մահացու հարված են ստանում:*

*Տաք եղանակներին հողմաշատ լեռնալանջերի միջև և դրանց վրա ստեղծվում են առանձնապես բարենպաստ պայմաններ ամենամեծ ուժգնության հասնող հոսանքների համար, որոնց հետ և կապված է ամպրոպային ամպերի կազմավորումը:*

*Որքան փոքր է լինում երկրի և ամպի միջև եղած տարածությունը, այնքան ավելի մեծ է լինում էլեկտրական պարպման հնարավորությունը: Դրա համար էլ լեռներում ամպրոպ ու կայծակ ավելի շատ է պատահում, քան հարթավայրերում: Նույնիսկ բլրաշատ*

վայրը բավականին նպաստում է ամպրոպային ամպերի գոյացմանն ու զարգացմանը:

Կայծակը մեծ մասամբ հարվածում է ռադիոյի և հեռուստացույցի կայմերին, բարձր տներին, ծառերին, դեզերին և հատկապես այն առարկաներին, որոնք լավ էլեկտրահաղորդիչ են: Հարթավայրում ամենից շատ խփում է այն տեղերին, որոնք առավել էլեկտրահաղորդիչ են՝ ճահիճ, գետափ:

Շենքերն ու զանազան կառուցվածքները կայծակից պաշտպանելու համար օգտագործում են շանթարգել, որը հոսանքն անց է կացնում հողի մեջ:

Իսկ մա՞րդն ինչպես պետք է պաշտպանվի կայծակնահարությունից: Ամենից առաջ չի կարելի թաքնըվել միայնակ ծառի տակ, մանավանդ՝ հենվել ծառաբնին, հեռու պետք է մնալ խոտի կամ ծղոտի դեզից, անավարտ կամ ավերակ շենքից: Վտանգավոր է նաև բարձր տեղերում և բաց հարթության վրա կանգնելը:

Ամպրոպի ժամանակ պետք է մի կողմ նետել մետաղե իրերը և պահվել առավել ցածր, ոչ խոնավ տեղ, բլուրների լանջերին: Եթե անտառում ես, պետք է դուրս գաս բացատ կամ ծառաբներից 10—15 սմ-ով հեռու կանգնես:

Ամպրոպի ժամանակ չպետք է լողանալ, չպետք է օգտվել ռադիոընդունիչից կամ հեռախոսով խոսել:

1967 թ. Անգլիայի Բիրմինգհեմ քաղաքում ֆուտբոլի խաղի ժամանակ կայծակնահար եղավ խաղացողներից մեկը: Այս և սրա նման այլ դեպքերը սովորեցնում են, որ ամպրոպի ժամանակ պետք է ընդհատել սպորտային խաղերը բաց մարզադաշտերում:

Սարերի գագաթներին, լեռնանցքներում կամ բարձր լեռնալանջերին տուրիստներն ու ալպինիստները երբեմն գտնում են զանազան մետաղե առարկաներ, որոնք ծռմռված, ծակոտված են լինում շանթահարումից: Իրոք, հարավային շրջաններում և հատկապես լեռներում ամպրոպային պարպումներր կարող են հասնել ժամում մի քանի հարյուրի, նույնիսկ՝ հազարների:

Մարդր կարող է տուժել ոչ միայն զիգզագաձև, այլև գնդաձև կայծակից: Սա ոչ մեծ հրե գունդ է, որր պատահում է և՛ դաշտում, և՛ անտառում, և՛ լեռներում, և՛ նույնիսկ շինությունների ներսում: Սա մեծ մասամբ ծագում է զիգզագաձև կայծակի հարվածի տեղում և կամ ամպրոպային ամպում՝ պարպման ժամանակ: Գնդաձև կայծակը կարող է լուրջ վնասվածք պատճառել առարկաներին, մահացու հարվածել կամ այրվածք պատճառել մարդկանց, կենդանիներին, հրդեհ առաջացնել: Երբեմն գնդաձև կայծակը անհետանում է անձայն կամ թույլ պայթյունով, ոչ մի վնաս չպատճառելով: Կայծակից պաշտպանվելու մասին վերևում տրված խորհուրդները վերաբերում են նաև գնդայինին: Միայն ավելացնենք, որ անվտանգության համար չպետք է փախչել գնդաձև կայծակից, որպեսզի օդի շարժումից նա ավելի չմոտենա, չպետք է որևէ իրով հարվածել: Ամպրոպի ժամանակ անհրաժեշտ է փակել դռներն ու լուսամուտները, ծխանցքները, որպեսզի ներս չմտնի: Շանթահարումը երբեմն մահացու է լինում, երբեմն միայն այրվածք է առաջացնում կամ կաթվածահար անում որևէ ծայրանդամը: Շանթահարվածին հողի մեջ թաղելը ճիշտ չէ: Անհրաժեշտ է տուժածին օդ տալ, իսկ լավագույնն այն կլինի, որ իսկույն հասցվի որևէ բուժկետ, արհեստական շնչառությամբ ուշքի բերելու համար:

Գ. ԿՈԳԱՆ-ԲԵԼԻՑԿԻ

## *Բուսական աշխարհի հրաշքները*

# ԹՌՉՈՒՆԸ ԲՈՒՅՍԻ ՓՈՇՈՏԻՉ

ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Ձեզանից շատերին է հայտնի, որ բույսերը կարող են փոշոտվել քամու, միջատների, պանապան մանր կենդանիների միջոցով: Սակայն, հավանաբար քչերին է հայտնի, որ բույսերի փոշոտիչ կարող են լինել նաև... թռչունները:

Թռչնաբան Պորշը հաշվել է, որ այդպիսի թռչունների քանակը երկրագնդի վրա անցնում է երկու հազարից:

Այդ թռչուններից ամենահետաքրքիրը կոլիբրին է: Տարածված է Ամերիկայում: Կոլիբրիին գրավում է արևադարձային որոշ բույսերի ծաղիկների առատ նեկտարը: Մարմնի փոքրության շնորհիվ այդ թռչունը ներս է մտնում ծաղիկների պսակից առաջացած խողովակներով և սընվում նեկտարանոցների անուշահամ հեղուկով: Մի ծաղկից թռչելով դեպի մյուսը, կոլիբրին իր փետուրներով ծաղկափոշի է տեղափոխում և փոշոտում կատարում:

Թռչուններով փոշոտվող ծաղիկները համեմատաբար խոշոր են, սակայն ոչ մի բուրմունք չունեն, քանի որ թռչունները մեծ մասամբ զուրկ են հոտառությունից:

Պետք է նշել, որ արևադարձային բույսերից շատերը մեծ քանակությամբ նեկտար են արտադրում: Երբեմն այն կարող է լցնել լիկյորի փոքրիկ բաժակը: Անհրաժեշտության դեպքում դրանից օգտվում են մարդիկ, հագեցնելով իրենց ծարավը:



Կոլիբրի











1. Երեխաներ:
2. Նորոգման աշխատանքներ:
3. Առանց ուղեփակոցի երկաթուղային գծանց:
4. Անհարթ ճանապարհ:
1. Մուտքն արգելված է:
2. Երթևեկությունն արգելված է:
3. Բեռնատար ավտոմոբիլների վազանցն արգելված է:
4. Արագության սահմանափակում:
1. Մարդատար ավտոմոբիլների երթևեկություն:
2. Թույլատրվում է երթևեկել միայն աջ:
3. Թույլատրվում է երթևեկել միայն ուղիղ և ձախ:
1. Սնվելու կետ:
2. Բուժօգնության կետ:
3. Տեխնիկական սպասարկման կետ:

# ՃԱՆԱՊԱՐՀԱՅԻՆ ՆՇԱՆՆԵՐ

Ճանապարհով արագ սլանում է մեքենան: Վարորդը լարված նայում է առաջ, աջ ու ձախ, ետ: Ի՞նչն է նրան այդքան հետաքրքրում:

Ճանապարհային նշանները:

Այդ նշանները խոսում են վարորդի հետ, մեկ հրամայում, մեկ զգուշացնում, մեկ ուղղություն ցույց տալիս՝ «ուշադրություն», «ճանապարհը բաց է», «չի թույլատրվում», «կարելի է»:

Նշանները տեղադրված են լինում ճանապարհների աջ կամ ձախ կողմում, իսկ փողոցներում դրանք կարող են կախված լինել մետաղալարերից, դրվել կենտրոնական մասում:

Ճանապարհային նշաններից մարդիկ օգտվում են շուրջ 300 տարի: Սկզբում դրանց թիվը շատ սահմանափակ է եղել: Բայց մեքենայի գյուտից հետո բազմապատկվել է և այժմ հասնում է ութսունի: Ամբողջ աշխարհում այդ նշանները նույնն են:

Ի՞նչ նշաններ են դրանք:

Կարմիր երիզներով սպիտակ եռանկյունի նշանները՝ ներսում որևէ պատկեր, նախազգուշացնող նշաններ են: Հաճախ մեքենայով հեռու տեղեր գնալիս, երբ ճանապարհը ազատ է լինում, դուք մեծ հաճույքով հետևում եք մեքենայի արագությանը և որքան այն բարձրանում է, այնքան ավելի եք ուրախանում, ճանապարհը հարթ ու հավասար է, չոր, ուրիշ երթևեկություն չկա, բայց հանկարծ վարորդը իջեցնում է արագությունը:

Ի՞նչ է պատահել:

Վարորդը նկատել է նախազգուշացնող նշան: Այն կարող է զգուշացնել առջևում գտնվող խաչմերուկի, երկաթուղային գծանցի, վերանորոգվող ճանապարհի մասին: Իսկ եթե եռանկյունու ներսում դպրոցական տարիքի տղա և աղջիկ է նկարված, նշանակում է՝ մոտերքում դպրոց կա և երեխաներ կարող են լինել ճանապարհի վրա:

— Վարո՛րդ, եղիր առավե՛լ ուշադիր,— կարգադրում է նշանը:

Ճանապարհային նշաններից խստագույնները համարվում են արգելող նշանները: Դրանք սպիտակ գույնի կլոր շրջանակներ են, կարմիր երիզներով: Այդ նշանները մի դեպքում արգելում են վարորդին վազանց կատարել, մի այլ դեպքում՝ արագությունը բարձրացնել, աջ կամ ձախ թեքվել, ազդանշան տալ, բեռնելիս սահմանված չափերը խախտել:

Արգելող նշաններից մեկը վարորդների կողմից երկրորդ անվանումն է ստացել՝ «աղյուս» կամ «պատ»: Որտեղ կախված է «մուտքն արգելված է» նշանը, այնտեղ մեքենաները մտնելու իրավունք չունեն:

Կա նաև թելադրող նշանների խումբ, որոնք վարորդին կարգադրում են գնալ միայն աջ կամ ձախ, ուղիղ: Այդ նշանները կապտագույն շրջաններ են, իսկ ներսում կարող են լինել սպիտակ սլաքներ կամ ավտոմեքենաներ, մոտոցիկլետ և հեծանիվ: Սլաքները ցույց են տալիս, թե որ ուղղությամբ կարելի է գնալ, իսկ մեքենաները՝ թե տրանսպորտային ինչպիսի տեսակների է թույլատրվում երթևեկել այդ ճանապարհով կամ փողոցով:

Ճանապարհային նշանների մեջ ամենահաճելին ու օգտակարը ցուցիչ նշաններն են: Կապտագույն կամ դեղնագույն քառանկյունիների տեսք ունեն: Երկար ճամփորդության մեկնելիս հանկարծ կարող ես բուժօգնության, նախաճաշի կամ հանգստանալու կարիք զգալ: Եթե անցար կարմիր խաչ, վրան, թեյի բաժակ, հեռախոսի լսափող պատկերող նշանների մոտով, ուրեմն շուտով կհանդիպես այդ հարմարություններին ու կետերին:

Այսքանը դեռ բոլորը չէ, կան նշանների լրացուցիչ, կարգավորող, ճանապարհային ու այլ կարգի շատ ու շատ ցուցիչներ:

Եթե փորձես սովորել և մտքումդ պահել այդ նշանները, ապա ավտոբուսով կամ մեքենայով ճանապարհորդելիս դու ինքդ էլ կհասկանաս այն լուռ խոսակցությունը, որ աննկատ տեղի է ունենում վարորդի ու ճանապարհային նշանների միջև:

ՎԱՀԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ

# ԵՐԹԵՎԵԿՈՒԹՅԱՆ ԿԱՆՈՆՆԵՐ

1. Մի՛ քայլիր փողոցի բանուկ մասով, քայլիր մայթո՛վ:

2. Ճանապարհի ու փողոցի վրա մի՛ խաղա:

3. Փողոցը անցիր հետիոտնի համար հատկացված անցումներո՛վ կամ ստորգետնյա անցուղիներո՛վ:

4. Եթե փողոցի վրա չկան անցման նշաններ՝ եղիր ուշադի՛ր: Փողոցը անցիր քայլելո՛վ: Մինչև փողոցի, ճանապարհի կեսն անցնելը կզգուշացիր ձախի՛ց, իսկ մյուս կեսը անցնելիս՝ աջի՛ց:

5 Սլացող մեքենայի առջևից մի՛ անցիր, վարորդը անմիջապես չի կարող կանգնեցնել մեքենան:

6 Կարմիր լույսի դեպքում մի՛ անցիր փողոցը կամ ճանապարհը, սպասիր լույսի փոխվելուն:

7 Ավտոբուսն ու տրոլեյբուսը շրջանցիր հետևի՛ կողմից, առջևից շրջանցելու դեպքում կարող ես ընկնել մեքենայի տակ, որը ավտոբուսի ետևից տեսանելի չէ:

8. Կանգառում տրամվայը շրջանցիր առջևի՛ց. այդպես կարող ես ընկնել հանդիպակաց ուղղությամբ անցնող տրամվայի տակ:

---

## ՈՒՄ ԻՆՉՔԱՆ ՀԱՍԱՎ

*(Միջնադարյան մաթեմատիկոս ՄԽԻԹԱՐ ԵՐԶՆԿԱՑՈՒ խնդիրներից)*

Մահվանից առաջ մի գյուղացի կանչեց երեք որդիներին ու ասաց.

— Այս տարի մեր երեսուն մաքիներից տասը ծնել են մեկական գառ, տասը՝ երկուական, տասը՝ երեքական: Հիմա ունենք իննսուն գլուխ մաքի ու գառ: Գնացե՛ք և ձեր միջև հավասար բաժանե՛ք: Միայն այնպե՛ս արեք, որ գառը մորից չբաժանվի, և հետո՝ յուրաքանչյուրիդ հասնի և՛ մեկ, և՛ երկու, և՛ երեք գառ ունեցող մաքիներ:

Որդիները կատարեցին իրենց հոր վերջին ցանկությունը:

Կարո՞ղ եք ասել, թե ինչպես բաժանեցին մաքիները:






## ԽԱՉԲԱՌ

Այս վանդակները լրացրեք չորս այնպիսի բառերով, որ և ուղղահայաց, և հորիզոնական ուղղություններով կարդալիս նույն իմաստն արտահայտեն:

## ՔԱՆԻ՞ ՍԱԼՈՐ ԿԱ ԱՓՍԵՈՒՄ

*Ճաշից հետո մայրը ասաց իր հինգ երեխաներին.*

*— Եթե այս ափսեի մեջ եղած սալորները բաժանեմ երկու հավասար մասի, մի սալոր կավելանա, եթե երեք մասի՝ երկու սալոր, չորս մասի դեպքում՝ երեք սալոր, իսկ հինգ մասի բաժանելիս՝ չորս սալոր:*

*Քանի՞ սալոր կա ափսեում:*

*Առաջարկ՝ Ս. ԱՐՇԱԿՈՒՆՈՒ*

## ՀՆԱՐԱՄԻՏ ԳՆՈՐԴԸ

*Մի գինեվաճառ գնորդներից մեկին առաջարկում է հետևյալ պայմանը.*

*— Իմ մառանում 21 կարաս կա, որոնցից յոթը գինով լիքն են, յոթը լցված են կիսով չափ, իսկ յոթը դատարկ են: Եթե դու այդ կարասները երեք հավասար մասի բաժանես և մի մասը մեր տուն տանես, մի մասը բերես խանութ, մի մասը թողնես մառանում, բայց այնպես, որ երեք մասում էլ նույն չափ գինի լինի, ապա մի տարի ես քեզ ձրի գինի կտամ: Իսկ եթե չկարողանաս բաժանել, մի տարի ձրի պետք է աշխատես ինձ համար:*

*Գնորդը համաձայնվում է և հեշտությամբ կատարում գինեվաճառի պայմանը:*

*Իսկ դուք կարո՞ղ եք բաժանել:*



ՍՊՈՐՏ

# ԻՆՉՊԵ՞Ս ԵՆ ԱՌԱՋԱՑԵԼ ՕԼԻՄՊԻԱԿԱՆ ԽԱՂԵՐԸ

Մեր օրերում ամենախոշոր սպորտային մրցման՝ օլիմպիական խաղերի ժամանակ մարզադաշտ են դուրս գալիս նախ հունական մարզիկները, իսկ օլիմպիական կրակը վառում են Հունաստանի հարավից՝ Օլիմպիոսից բերված վառվող ջահից: Դա հարգանքի տուրք է օլիմպիական խաղերի հայրենիքին:

Երեք հազար տարի առաջ Հին Հունաստանում՝ Օլիմպիոսում, որը գտնվում է Ալֆոս գետի հովտում, յուրաքանչյուր չորս տարին մեկ տեղի էին ունենում ատլետների մրցություններ: Երկրի բոլոր կողմերից այստեղ էին գալիս ամենաուժեղ, ամենաարագավազ պատանիները: Այդ ժամանակ ամբողջ երկրով մեկ հայտարարվում էր «սուրբ պինադադար»: Ոչ մի մարդ իրավունք չուներ զենք գործածելու և նույնիսկ զենք կապած երևալու Օլիմպիոսում: Սկզբում մրցության միակ ձևը վազքն էր: Հետո ավելացան ըմբշամարտը, բռնցքամարտը, կառարշավը, ապա նաև հընգամարտը, որի մեջ մտնում էին վազքը, թռիչք-երկարությունը, ըմբշամարտը, սկավառակի և տեգի նետումը:

Հանդիսատեսները նստում էին ուղղակի գետնին՝ Քրոնիս բլրի լանջերին: Նրանց առջև ձգվում էր քառանկյուն տեսք ունեցող արենան իր վազքուղով, որի երկարությունը 1 ստադիա էր (մոտավորապես 192 մետր): Ըստ ավանդության, վազքուղին չափել է Հերակլեսը: Այն հավասար էր նրա 60 ոտնաթաթի երկարությանը: Հունաստանի մյուս քաղաքներում էլ վազքուղիների երկարությունը գլխավոր քուրմը որոշում էր նույն ձևով: Հասկանալի է, որ տարբեր քաղաքներում վազքուղիները տարբեր երկարություն ունեին: Օլիմպիոսինը ամենաերկարն էր, որովհետև Հերակլեսի ոտնաթաթը շատ ավելի մեծ էր սովորական մարդկանց ոտնաթաթից:

Օլիմպիական խաղերում հաղթողները պսակվում էին ձիթենու սրբազան համարվող ծառից ոսկյա դանակով կտրված ճյուղերից հյուսված պսակով: Օլիմպիական խաղերում մրցում էին ոչ միայն մարզիկները: Բանաստեղծները կարդում էին ատլետներին գովերգող իրենց բանաստեղծությունները, հռետորները մրցում էին պերճախոսությամբ:

## ՉՈՐՔՈՏԱՆԻ ՀԱՂԹՈՂՆԵՐԸ

*Հին Հելլադայի բնակիչները շատ էին սիրում մրցել կառքերով և չթամբած ձիերով: Ո՞ւմ են գովերգում բանաստեղծներն ու երգիչները հաղթանակից հետո: Հեծյալի՞ն: Բոլորովին: Հանդիսատեսները նույնիսկ չգիտեին այդ խիզախ մարդկանց անունները: Հարգանքի տուրք էր մատուցվում կառքի կամ ձիու տիրոջը, իսկ հետո՝ չորքոտանի հաղթողին:*

*Մի անգամ օլիմպիական խաղերի ժամանակ կատարվեց այսպիսի մի դեպք. Աուրա անունով ձին արշավելիս ցած գցեց հեծյալին, սակայն լսելով փողերի ձայնը՝ շարունակեց վարգը և առաջինը հասավ վերջ-*

ԽԱՂԵՐ

### Ո՞Վ Է ԾՈՒՏ ՀԱՆՁՆՈՒՄ

*40—60 խաղացող բաժանվում են երկու խմբի: Սրանք էլ իրենց հերթին քառյակներ են կազմում: Ապա երկու խմբի քառյակները իրար դիմաց կանգնում են 5—6 քայլ հեռավորությամբ: Երբ խաղավարը հրահանգում է՝ երեք, չորս, խմբերի առաջին քառյակները նրանից վերցնում են կապրոնե շրջանակը, անցկացնում իրենց մարմնով և հանձնում երկրորդ քառյակին: Շրջանակը այդպես հաջորդաբար փոխանցվում է: Փոխանցումը կատարում է միայն մի հոգի: խաղացողները կարող են կանգնել եռյակներով և հնգյակներով:*

*Հաղթում է այն խումբը, որի վերջին քառյակը շրջանակը ավելի շուտ է հանձնում խաղավարի օգնականին:*

*Շրջանակը կարող է ունենալ մեկ մետր տրամագիծ: Այն կարող է լինել նաև ալյումինից:*

### ԲՈԼՈՐԻՑ ԱՐԱԳ

*Մեկնման գծին ուղղահայաց շարք են կանգնում 10—30 հոգուց բաղկացած 2—3 խումբ: Շարքերից 7—8 քայլ հեռավորության վրա իրար զուգահեռ դրվում են պարանից պատրաստված երեքական օղակներ, իսկ նրանցից երեք քայլ հեռու՝ մեկական աթոռ: Խաղավարը հրահանգում է. «Վազքով մա՛րշ»: Շարքերից վազում են մեկական հոգի, երեք օղակները անցկացնում մարմնով, շրջանցում աթոռը, վերադառնում և հարվածում հաջորդին, իսկ իրենք կանգնում շարքի վերջում: Հաղթող է համարվում այն խումբը, որի վերջին խաղացողը ավելի շուտ կհասնի խաղավարի մոտ:*

*Օղակները պետք է ունենան 75 սմ տրամագիծ:*

*ՎԱՐԴԱՆ ՊԵՏՐՈՍՅԱՆ*
*(վաստակավոր ուսուցիչ)*

Նաջծին: Հաղթանակը շնորհվեց նրա տիրոջը, մի հարուստ կորնթացու, իսկ ձիուն հուշարձան կանգնեցրին՝ նրա ոտքերի արագաշարժությունը գովերգող մակագրությամբ:

# ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ՀԻՆԳ ՕՂԱԿՆԵՐԸ

Օլիմպիական խաղերը անցկացվեցին ավելի քան հազար տարի, այնուհետև մոռացության մատնվեցին: 1894 թվականին ֆրանսիացի նշանավոր հասարակական գործիչ Պիեռ դե Կուբերտենի եռանդուն ջանքերի շնորհիվ վերականգնվեցին օլիմպիական խաղերը, որոնք անց են կացվում մինչև հիմա:

Օլիմպիական խաղերի խորհրդանիշը՝ հինգ միահյուսված բազմագույն օղակներով զարդարված դրոշակն է: Երկնագույն օղակը Եվրոպայի գույնն է, դեղինը՝ Ասիայի, սևը՝ Աֆրիկայինը, կանաչը՝ Ավստրալիայինը, կարմիրը՝ Ամերիկայինը: Առաջին անգամ այդ դրոշակը բարձրացվել է 1920 թվականին Բելգիայի Անտվերպեն քաղաքում կայացած օլիմպիական խաղերի ժամանակ: Այն խորհրդանշում է հողագնդի հինգ աշխարհամասերի մարզիկների բարեկամությունը և համախմբվածությունը:

Սովետական Միությունը առաջին անգամ օլիմպիական խաղերին մասնակցեց 1952 թվականին, Հելսինկիում, և դարձավ հաղթող: Մեր երկիրը հաջողությամբ մասնակցեց նաև հետագա օլիմպիական խաղերին:

Հայաստանից օլիմպիական խաղերի չեմպիոններ են դարձել Հրանտ Շահինյանը, Ալբերտ Ազարյանը, Վլադիմիր Ենգիբարյանը և Իգոր Նովիկովը:

## «ՈՒՇԱԴԻՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՄՐՑՈՒԹՅՈՒՆ»

ԵՐՐՈՐԴ ՏՈՒՐ

1. «Ինձ համար սա ամենամեծ նվերն է»: Ո՞վ է այսպես ասել և ի՞նչ գիտեք նրա մասին:
2. «Արձակուրդից է վերադարձել, տպավորություններ է պատմում»: Ո՞րտեղ էր արձակուրդ գնացել այս ստեղծագործության հերոսը:
3. «Հայտնի եմ ես իմ քաջությամբ»: Շարունակեցեք նախադասությունը և գրեք հեղինակի անունը:
4. «Առաջ գնալը հեշտացավ, և հիմա նրանք լայն քայլեր էին գցում»: Ո՞վ է այս ստեղծագործության հեղինակը, ինչի՞ մասին է գրում:

Պատասխանները պետք է ուղարկել մինչև հոկտեմբերի 15-ը:

Լույս է տեսնում 1923 թվականից:



ՊԻՈՆԵՐ

№ 8 օգոստոս 1972 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ նկ. ՌԱՖԱՅԵԼ ԲԱԲԱՅԱՆԻ



**«Пионер»** на армянском языке. Адрес редакции: Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Հասցեն՝ 375200, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15:

Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96:

ՎՖ 05710: Պատվեր՝ 1262: Տպաքանակ՝ 73700: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 21.VIII 1972 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ., № 91:

ԳԻՆԸ՝ 10 Կ

ԻՆԴԵՔՍ՝ 77806



ՍՄԲԱՏՅԱՆ ԱՐՇԱԿ
Երևան, 10 տ.



ՎԱՐԴԱՆՅԱՆ ՋՈՒԼԻԵՏ
Սևանի շրջ. գյուղ Գեղամավան, 15 տ.



ՄԵԼՔՈՆՅԱՆ ԳԱԳԻԿ
Լենինական, 13 տ.